

ՄՈՍԿՎԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԴԵԼԵԳԱՑԻԱՆ ՈՂՋՈՒՆՈՒՄ Է ՍՄԿԿ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՆ

# ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ

*ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ*

Շնորհակալ ենք քեզանից, Պարտիա,
Մեր բազմախորհուրդ այս կյանքի համար,
Եվ կամքի համար քո այդ պողպատյա.
Եվ քո հայրական քնքշանքի համար:
Շնորհակալ ենք քեզանից հավետ
Այս հովիտների համար ծաղկավետ,
Այս ջրվեժների զնգոցի համար,
Խաղերի համար այս երջանկավետ,
Այս խարույկների բեժ բոցի համար:
Շնորհակալ ենք, Պարտիա, քեզանից
Հավատի համար հստակ ու անբիծ,
Եվ բախտի համար մեր այս լուսավոր,
Եվ երազանքի համար թևավոր:
Շնորհակալ ենք մենք այս դպրոցի,
Այս դասարանի, այս գրքի համար,
Մեզ վրա բացվող այս լուսաբացի
Եվ մեր փառավոր գալիքի համար:
Շնորհակալ ենք, որ քո կրծքի տակ
Լենինի սիրտն է բաբախում հստակ,
Որ դու լենինյան դրոշը պարզած,
Դեպի գալիքն ես գնում երազած:
Շնորհակալ ենք, Պարտիա, քեզանից...
Եվ երդվում ենք քեզ հավատով անբիծ՝
Չշեղվել երբեք հայրերի ճամփից:
Երդվում ենք՝ անահ լինել մշտապես,
Ո՛չ մի հողմի դեմ գլուխ չծռել,
Ապրել, սովորել, աշխատել այնպես,
Ինչպես Լենինն է սովորեցրել:
Երդվում ենք՝ լինել հար հավատարիմ
Լենինյան պայծառ քո գաղափարին
Եվ քո հաղթական դրոշը տանել
Մինչ կոմունիզմի բարձունքները վեր:




*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 3
ՄԱՐՏ
1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ

*Դու տեսնում ես, թե ինչպես արագ է փոխվում քո շրջապատը, թե ինչպես են բարձրանում նորանոր գործարաններն ու հզոր էլեկտրակայանները, յուրացվում միլիոնավոր հեկտար խամ ու խոպան հողեր, կառուցվում նոր երկաթուղիներ, բազմահարկ բնակելի հոյակապ շենքեր, նոր դպրոցներ, ակումբներ, կինոներ ու թատրոններ։ Դու կարդում ես բազմաթիվ հետաքրքիր գրքեր, թերթեր, ամսագրեր, հանգստի ժամերդ անց ես կացնում պիոներական տանը, մանկական գրադարանում, ստադիոնում, զբոսայգում կամ քեզ և քո ընկերների համար կառուցված հասարակական մի այլ վայրում։ Եվ ամենուրեք դու զգում ես հայրական ջերմ հոգատարություն։*

*Այդ բարիքները քեզ համար ստեղծել են Կոմունիստական պարտիան ու Սովետական պետությունը։ Կոմունիստական պարտիան մեր ժողովրդի կոլեկտիվ առաջնորդն է, նրա պայքարի ու հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը։ Չէ՞ որ կոմունիստները պրոլետարական ռևոլյուցիայի առաջնորդ մեծ Լենինի հերոսական բանակի անվախ ու համարձակ զինվորներն են, աշխատավորների շահերին նվիրված ամենաանկեղծ և լավագույն մարդիկ։*










*Ամեն ինչ մեր երկրում կատարվում է Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության կողմից նախապես կազմած միասնական ու ճիշտ պլանով։ Դրանք կազմվում են հինգ տարին մեկ անգամ և կոչվում են հնգամյա պլաններ։*

*Այդպիսի մի հոյակապ պլան ընդունվեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քսաներորդ համագումարի կողմից, որը տեղի ունեցավ այս տարվա փետրվարին մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում։*

*Մեր պարտիայի քսաներորդ համագումարը սովետական ժողովրդի և ամբողջ աշխարհի աշխատավորության կյանքում մեծ իրադարձություն էր։ Աշխարհի բոլոր ծայրերից կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարները եկել էին ողջունելու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քսաներորդ համագումարին։ Համագումարում հաշվետու զեկուցում տվեց ընկեր Խրուշչևը։ Նա խոսեց մեր երկրի արտաքին և ներքին դրության մասին, գյուղատնտեսության և արդյունաբերության, գիտության և կուլտուրայի ասպարեզում մեր երկրի նվաճումների մասին։ Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960*













*թվականների վեցերորդ հնգամյա պլանի մասին զեկուցումով հանդես եկավ ընկեր Բուլգանինը։ Այնուհետև համագումարը վեցերորդ հնգամյա պլանի կապակցությամբ դիրեկտիվներ տվեց մեր երկրի աշխատավորությանը, նրա ավանգարդ Կոմունիստական պարտիային։ Վեցերորդ հնգամյակի ընթացքում մեր երկիրը չտեսնված նվաճումների կհասնի։*

*Ահա մտքով տեղափոխվում ենք 1960 թվականը...*

*Ահա մենք նստած ենք տանը և հեռուստատեսի միջոցով տարբեր կայանների օգնությամբ դիտում ենք, թե ինչ է կատարվում մեր մեծ Հայրենիքում։*

*Հեռուստատեսն արդեն միացված է էլեկտրական հոսանքին... Էկրանի վրա արագ կերպով միմյանց հաջորդում են շլացնող տեսարաններ։ Այս հինգ տարիների ընթացքում ամեն ինչ փոխվել է, ամեն ինչ շատացել ու լավացել։ Էկրանի վրա երևում են մեր անծայրածիր երկրի տարբեր վայրերում կառուցված մետաղագործական հսկա գործարանները, որոնք 1955 թվականի համեմատությամբ մեկ և կես անգամ ավելի չուգուն և պողպատ են տալիս մեր երկրին։ Անցնում են բեռնատար գնացքների և ավտոմեքենաների շարասյուները։ Դրանք մեր ծանր արդյունաբերության կարիքների համար երկրի տարբեր անկյուններն են փոխադրում 1960 թվականին արտադրած 53 միլիոն տոննա չուգունն ու 68,3 միլիոն տոննա պողպատը, 593 միլիոն տոննա ածխի և 135 միլիոն տոննա նավթի հանույթը։ Դրանցից մեքենաշինական գործարաններում պատրաստվում են հարյուր հազարավոր նոր ավտոմեքենաներ, տրակտորներ, ինքնաթիռներ, հաստոցներ, գնացքներ և ուրիշ-ուրիշ շատ բաներ։ Ընդարձակվել է նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը։ Գործիքաշինական, չուգունի ձուլման, հախճապակու, արհեստական մետաքսի արտադրության, պահածոների, կաթի, յուղի և պանրի գործարաններ, դաշնամուրի հավաքման, գորգագործական և այլ ֆաբրիկաներ են կառուցվել Երևանում, Լենինականում, Կիրովականում, Ղափանում, Ալավերդում, Ախտայում, Ջերմուկում և ռեսպուբլիկայի շատ այլ վայրերում։*

*Սակայն էկրանի մի անկյունում երևում են նաև այլ թվեր — չուգուն 3,3 միլիոն տոննա, պողպատ 4,2 միլիոն տոննա, ածուխ 35,2 միլիոն տոննա, նավթ 11,7 միլիոն տոննա։ Իմ փոքրիկ բարեկամ, դու շտապում ես հարցնել, թե ի՞նչ թվեր են դրանք։ Բայց կարդա ինքդ, տեսնո՞ւմ ես, այնտեղ գրված է՝ «առաջին հնգամյակի սկզբին մեր երկիրն արտադրել է...» և ապա հետևում են այդ թվերը, որոնք մեր այս հնգամյակի թվերի կողքին գրեթե չեն երևում։*

*Ահա և գազատար նոր խողովակները, նրանց ընդհանուր երկարությունը հասնում է 9000 կիլոմետրի։ Նրանք անցնում են Ստավրոպոլից Մոսկվա, Դաշավայից Մինսկ և Լենինգրադ, Կազանից Գորկի... գազ են ստանում նաև Սովետական Միության այլ խոշոր կենտրոններ։*

*Էկրանի վրա վառվում են Իլյիչի բազմաթիվ լամպեր։ Դրանք գործող էլեկտրակայաններն են։ Ահա մեզ ծանոթ Կույբիշևի և Ստալինգրադի, Վոտկինսկի և Իրկուտսկի, Բրատսկի և Նովոսի-*










ԲԱՄԲԱԿ




ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂ

բիրսկի կայանները։ Ահա և նորերը Սարատովում և Չերոկասրիում, Կամենսկում, Դնեպրոձերժինսկում, Կրասնոյարսկում և այլ վայրերում։ Վառվում են նաև Սևան—Հրազդան կասկադի վերջին հինգ էլեկտրակայանների՝ Արզնիի, Աթարբեկյանի, Երևանի, Նորագավթի և Արգավանդի կայանների լույսերը... Իլյիչի լամպերը էկրանի վրա կարմիր լույսով գրում են 320 միլիարդ կիլովատ ժամ։ Դա 1960 թվականին մեր երկրում ստացած էլեկտրաէներգիան է։ Բայց ի՜նչ հսկայական աճ, չէ՞ որ առաջին հնգամյակի սկզբին մեր երկիրը տարեկան ստանում էր միայն 5 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Ապա ուշադիր նայիր էկրանին, տեսնո՞ւմ ես այն նոր տիպի էլեկտրակայանները։ Նրանք ո՛չ ջրով են սնվում, ո՛չ ածխով և ո՛չ էլ տորֆով։ Նրանք ատոմային էլեկտրակայաններ են, որոնք արդեն 500 անգամ ավելի էլեկտրաէներգիա են տալիս, քան աշխարհում այն առաջին էլեկտրակայանը, որը գործարկվեց մեր երկրում 1954 թվականին։

Նայում ես, ուրախանում, և սիրտդ լցվում է մեր պարտիայի ու Սովետական կառավարության նկատմամբ ջերմ հպարտությամբ... Շռայլ լույսերով է ողողվում մեր անծայրածիր երկիրը, իսկ Սովետական իշխանություն գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան հավասար է կոմունիզմի,— ասում էր Լենինը։

Էկրանի վրա գնալով փոխվում են պատկերները։ Ահա հիանալի հարմարություններ ունեցող 2000 նոր էլեկտրաքարշերն ու 2250 ջերմաքարշերը։ Նրանք անցել են 6500 կիլոմետր նոր երկաթուղային ճանապարհով, և այժմ վազք են կատարում այն 8100 կիլոմետր գծով, որն էլեկտրիֆիկացիայի է ենթարկվել նոր հնգամյակում։ Ամեն մի կայարանում կարգավորվում է գնացքների երթևեկությունը, նրանք աշխատում են անվթար։ Ահա կայարանային մի սենյակ, որտեղից ղեկավարվում է գնացքների երթևեկությունը։ Տարօրինակ բան։ Այնտեղ մի մարդ է նստած։ Նա է կառավարում բազմաթիվ գնացքների երթևեկությունը։ Նրա աշխատանքն ավտոմատացված է, ղեկավարում է հեռուստատեսի օգնությամբ։ Եվ որքա՜ն է հեշտացել մարդու աշխատանքը։ Հեռուստատեսի օգնությամբ են աշխատում նաև հզոր էլեկտրակայաններն ու արդյունաբերության բազմաթիվ այլ ճյուղեր։

Իսկ ինչքա՜ն նոր, հարմարավոր բնակելի շենքեր են կառուցված մեր հիանալի մարդկանց համար, ինչքա՜ն շատ բան է արված մարդկանց կյանքի բարելավման համար։

Սեպտեմբերի մեկն է, մեր հեռուստատեսն հաղորդում է ընդունում մեր երկրի բազմահազար դպրոցներից։ Իսկ ինչո՞ւ ոչ մի հաղորդում չեղավ որևէ ոչ լրիվ միջնակարգ դպրոցից։ Բայց չէ՞ որ 1960 թվականին մեր բոլոր քաղաքներում և գյուղերում իրականացված է պարտադիր, անվճար միջնակարգ կրթություն։

Ամեն ինչ հնարավոր չէ միայն հեռուստատեսի օգնությամբ տեսնել։

Պետք է կարդալ, լսել, աշխատել, սովորել, որպեսզի հետաքրքրող բոլոր հարցերի սպառիչ պատասխաններն ստանալ։

Գ. ԳԱԼՈՅԱՆ

(Պատմական գիտությունների թեկնածու)

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ










ԲԱՆՋԱՐԵՂԵՆ

*Կանցնի մի հնգամյակ, կգա 1960 թվականը։ Այդ տարիները Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի համար ծաղկման ու վերելքի տարիներ կլինեն։ 1,7 անգամ կաճի ծանր արդյունաբերության համախառն արտադրանքը։ Ռեսպուբլիկայում մեծ չափերով կավելանա էլեկտրաէներգիայի, ցեմենտի, հանքային պարարտանյութերի, խաղողի, գինու, կաշվե-կոշկեղենի արտադրությունը, շարք կմտնեն նոր գործարաններ։*

*Շուտով, շատ շուտով որակյալ բանվորների, տեխնիկների, ինժեներների նոր ջոկատները կշտապեն համալրելու ացետատային մետաքսի, գործիքաշինական, պահածոյի գործարանները։ Հայաստանը մեր երկրին կտա նոր գործիքներ, մետաքս, պահածոներ։*

*Կավարտվի Սևան—Հրազդան կասկադի վերջին հիդրոկայանների կառուցումը։ Կսկսվի Տաթևի հզոր հիդրոէլեկտրակայանի շինարարական աշխատանքը։ Կավելանան էներգիայի նոր հզոր աղբյուրները, որոնք է՛լ ավելի մեծ թափ կհաղորդեն գործարանների, հանքերի, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքներին։ Է՛լ ավելի պայծառորեն կշողան լույսերն ամենուր։*

*Այդ տարիներին գյուղատնտեսության արտադրանքը մեծ չափերով կավելանա։ Բնակչությունը կստանա ավելի շատ հացահատիկ, միս, կաթ, բուրդ, բոժոժ։ Ծաղկած մրգատու այգիների, խաղողի հրաշալի վազերի տարածությունները կմեծանան, կշատանան սպիտակ ոսկու՝ բամբակի պլանտացիաները։*

*Թալինի ոռոգման ջրանցքը և Արզնի—Շամիրամի ոռոգման սիստեմի առաջին հերթը նոր կյանքի կկոչեն 39 հազար հեկտար անջրդի տարածություններ, հարյուր հիսուն հազար հեկտար արոտավայրեր։*

*Կծաղկի ու կբարգավաճի Սովետական Հայաստանը՝ Սովետական Միության մեծ ընտանիքի իրավահավասար անդամներից մեկը։*

## ՄԵԾ ՊԱՐՏԻԱՅԻՆ

Մայրս կար տվել, օրօրել է ինձ,
Երբ օրորոցում քնած եմ եղել,
Բայց դու ես հսկել խաղաղ քունը իմ
Եվ քո հայացքը ինձնից չես շեղել:

Ես մեծացել եմ ու հասակ առել,
Քո հայացքի տակ բարի, հայրական
Եվ իմ ողջ կյանքի համար լուսեղեն
Մորիցս առավել քե՛զ եմ պարտական:

*ՎԱԶԳԵՆ ԱՍԱՏՐՅԱՆ*



# ԳԱՐՆԱՆ ԵՐԳ

*Ս. ԽԱՐԱՁՅԱՆ*

*Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*



Խշշում է անտառը թեթև,
Զեփյուռը երգում է գարուն
Ու կապույտ, երկնագույն մի թև
Ծածկել է դաշտերի հեռուն:
Արթնացած աշխարհն է բռնել
Գարունը իր կանաչ ձեռքով,
Ամենուր բացվել են ծառեր,
Տարածել ծաղկունքի մի ծով:
Ժպտում են սարերն անթախիծ,
Կարոտով բարևում իրար,
Կանգնել ու լսում եմ հեռվից
Ջրերի հորձանքը վարար:
Հանդերից ծաղիկ է տանում
Առվակը հեռավոր տեղեր,
Ասես թե նա էլ է մանուկ,
Որ սիրով ծաղիկ է քաղել:
Խշշում է անտառը թեթև,
Զեփյուռը երգում է գարուն
Ու կապույտ երկնագույն մի թև
Ծածկել է դաշտերի հեռուն:







# ԵՐԿՈՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Մ. ՇԱԹԻՐՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

— Նրանք երբեք մեզ չեն հասկանա,— ասաց Պրոխոր Դմիտրիևիչը։— Մեզ հասկանալու համար նրանք պիտի ա՛յ այսպիսի ձեռքեր ունենան,— և ծերունի բանվորն ուղիղ քթիս մոտեցրեց իր ահագին ձեռքերը։

— Բայց չէ՞ որ դուք երբեք չեք հանդիպել կապիտալիստներին, Պրոխոր Դմիտրիևիչ, ի՞նչ գիտեք, թե նրանք չեն կարող մեզ հասկանալ…

— Ո՜վ, ե՞ս,— քմծիծաղ տվեց նա։— Սխալվում ես, տղա՛ս, ես հանդիպել եմ նրանց և այն էլ՝ մի քանի անգամ…

Ես ուշադրությամբ նայեցի ծերունու դեմքին։ Մենք նստած էինք Լենինգրադի Նարվսկայա Զաստավա կոչված գործարանային շրջանում գտնվող նրա տանը, շրջապատված նրա ընտանիքի բազմաթիվ անդամներով՝ տղաներով, հարսներով և թոռներով։ Երեխաներով շրջապատված, Պրոխոր Դմիտրիևիչը հաճախ սիրում էր կատակել, բայց այժմ նրա դեմքից երևում էր, որ նա շատ լուրջ է։

— Հը, ի՞նչ եք աչքերդ վրաս չռել,— դարձավ նա իրեն նայող թոռնիկներին։— Չլինի՞ նորից կպչելու եք, որ պատմեմ…

— Պատմի՛ր, պատմի՛ր, պապի՛… Մեր ձեռքից չես պրծնի, պատմիր…

Նա մի պահ լռեց, կարծես մտքերը հավաքելու համար, ապա սկսեց.

— Կապիտալիստներ ես ռևոլյուցիայից առաջ էլ էի տեսել. նրանց մոտ աշխատել եմ ու նրանց դեմ կռվել։ Հետո նրանց տեսա առաջին հնգամյակի սկզբին, երբ ուզում էինք ամերիկացիներից գոնե մեկ հատ բլումինգ առնել։ Մեր կառավարությունն այդ բլումինգի համար պետք է վճարեր ավելի քան քառասուն միլիոն ռուբլի ոսկով… Սպասիր,— հանկարծ դիմեց ինձ ծերունին,— իսկ դու գիտե՞ս, թե ինչ բան է բլումինգը…

Պետրուշան, տասներեք տարեկան մի պատանի, ուղղեց պիոներական վզկապը, ապա անվախ ասաց.

— Բլումինգը մետաղագործական ամենամեծ հաստոցն է և ունի երկու հսկայական գլան, որոնց միջոցով գլանում են մի տոննայից ավելի կշիռ ունեցող պողպատի կտորներ, տալով նրանց տափակ, քառանկյունի, կլոր, կամ անկյունավոր ձև…

— Ա՛յ, ապրե՜ս,— գոհունակությամբ ասաց ծերունին,— տեսնո՞ւմ ես, ի՜նչ է նշանակում գործարանային բանվորի երեխա՝ փոքրուց արդեն գիտի ամեն բան։ Այո՛, տղա՛ս, որպեսզի հնարավոր լինի ավտոմոբիլներ, վագոններ, շոգենավեր, մանածագործական հաստոցներ և այլ մեքենաներ պատրաստել, հարկավոր է թիթեղաձև կամ քառանկյունի, կլոր կամ անկյունավոր պողպատ, իսկ այդպիսի պողպատ ստանալու համար անհրաժեշտ է բլումինգ։ Այսպիսով բլումինգը մեքենաների մեքենան է, որից մենք չունեինք և ուզում էինք գնել ամերիկացիներից, բայց նրանք չվաճառեցին…

Եվ այն ժամանակ մեր պարտիան ու կառավարությունը որոշեցին, որ իրենք շինենք բլումինգներ։ Ես հիշում եմ, թե ինչպես Սերգեյ Միրոնովիչ Կիրովն իր մոտ կանչեց Լենինգրադի ամենափորձված ինժեներներին և բանվորներին։

— Հասկանո՞ւմ եք,—ասաց նա մեզ,—առանց բլումինգների մենք չենք կարող երկիրն արդյունաբերական դարձնել և կախման մեջ կմնանք կապիտալիստական երկրներից…

— Հանգիստ եղեք, Սերգեյ Միրոնովիչ, մենք սովետական բլումինգ կպատրաստենք,— ասացինք մենք։

Բայց ասելը հեշտ էր։ Չէ՞ որ այդ բլումինգը մի քանի հարյուր տոննա կշիռ պիտի ունենար։ Մեր ինժեներները նախագծեր էին կազմում, հաշվումներ անում, տեղեկագրեր քրքրում… Եվ ահա,

Հենց այդ եռուզեռի ժամանակ էլ մեզ մոտ հայտնըվեց ամերիկյան նշանավոր միլիարդատեր Մորգանի պողպատի արդյունաբերության տրեստի ներկայացուցիչը։ Ինչպես երևում է, նրանք այնտեղ լսել էին, որ բոլշևիկները վճռել են սեփական ուժերով բլումինգ կառուցել և ուղարկել էին այդ մարդուն, որ տեսնի՝ բան դուրս կգա՞, թե ոչ։ Նա շրջեց ցեխում, նայեց այնտեղ դրած հասարակ հաստոցներին և հանկարծ մոտեցավ ինձ.

— Դուք երբևէ բլումինգ տեսե՞լ եք,— հարցրեց նա։

— Ո՛չ։ Տեսել եմ միայն փոտոնկարը և գծագրերը,— ասացի ես,

— Եվ կարծում եք, թե այդքանը բավակա՞ն է, որպեսզի դուք կարողանաք բլումինգ կառուցել,— քմծիծաղ տվեց նա։— Այդպիսի հաստոց շինելու համար հարկավոր են գիտելիքներ, փորձ և բազմաթիվ բարդ մեքենաներ...

— Դե, իհարկե, դժվար կլինի,— համաձայնեցի ես,— բայց չէ՞ որ դուք չվաճառեցիք մեզ գոնե մեկ հատ բլումինգ։

— «Մե՞զ»,— նա արհամարհական ծռեց շըրթունքները,— դուք այնպես եք խոսում, կարծես այս գործարանի տերն եք։

— Այո, իհարկե,— պատասխանեցի ես,— 1917 թվականից, ինչ մենք դուրս վռնդեցինք մեր նախկին գործարանատիրոջը, ես այս գործարանի տերն եմ։

— Իսկապե՞ս,— ժպտաց նա։

— Իսկ կարելի՞ է հետաքրքրվել, թե որքա՞ն եկամուտ ունեք դուք։

— Ամսական երեք հարյուր ռուբլի,— ասացի ես (այն ժամանակ ես իսկապես այդքան էի ստանում)։

— Երեք հարյուր ռուբլի, այսինքն մոտ վաթսուն դոլար։— Բարձր ծիծաղեց ամերիկացին։

— Ա՜յ քեզ գործարանատեր։

Այն ժամանակ ես սաստիկ բարկացա և ասացի այդ մարդուն.

— Գիտեք ինչ, պարոն լավ մարդ, դուք, տեսնում եմ, մեր կյանքից ոչինչ չեք հասկանում, բայց ես ձեզ մի բան միայն կասեմ. լավ է, որ դուք չվաճառեցիք մեզ ձեր բլումինգը, քանի որ մենք ինքներս էլ կկարողանանք շինել. ահա ա՛յս ձեռքերով կշինենք և ոչ մի կոպեկ էլ ձեզ չենք տա...

Մի ամիս հետո եկավ ընկեր Կիրովը. նա ամեն օր հետաքրքրվում էր, թե ինչպես է գնում մեր աշխատանքը և հաճախ անձամբ գալիս էր մեզ մոտ։ Նա բերեց իր հետ մի ամերիկյան թերթ, որտեղ տպված էր մեր «հյուրի» հոդվածն այն մասին, որ «բոլշևիկները ցնորամիտ գործ են ձեռնարկել. չունենալով ո՛չ համապատասխան մեքենաներ, ո՛չ սարքավորում, ո՛չ փորձ, նրանք ուզում են կառուցել ժամանակակից բլումինգ»։ Նա գրում էր, որ այդ ձեռնարկումից ոչինչ չի ստացվի։

Պրոխոր Դմիտրիևիչը մի պահ լռեց, ծխեց, ապա շարունակեց.

— Ես չգիտեմ, թե ինչ էր գրում այդ մարդը այն ժամանակ, երբ մենք մեծ դժվարություններով վերջացրինք բլումինգի կառուցումը։ Բայց այն օրվանից պարզ դարձավ, որ կապիտալիստները երբեք չեն հասկանա մեզ, մեր հոգին, մեր մըտքերը... Եվ ես դրանում համոզվեցի պատերազմի ժամանակ, երբ երկրորդ անգամ հանդիպեցի օտարերկրյա բուրժուական թերթի մի թղթակցի հետ...

— Դե, դու հիշում ես Լենինգրադի պաշարման առաջին սոսկալի ձմեռը,— դեպի ինձ դարձավ Պրոխոր Դմիտրիևիչը։— Մեր գործարանը վաղուց փոխադրվել էր Ուրալ և պատրաստվում էր տանկեր թողարկել, բայց ես հիվանդության պատճառով չկարողացա մեկնել և մնացի Լենինգրադում։ Երբ ֆաշիստները կտրեցին քաղաքի համար սննդամթերք և ռազմապաշար հայթայթե-



յու բոլոր ճանապարհները, ես և քաղաքում մնացած մյուս բանվորները հանեցինք պահեստներում գցված հին հաստոցները և նորոգելուց հետո սկսեցինք արկեր արտադրել։

— Հիշում եմ այդ օրերը,— ընդհատեցի ես նրան։— Չէ՞ որ հենց այդ ժամանակ էլ ես ծանոթացա ձեզ հետ... Մենք եկել էինք զորամասից, որ շնորհակալություն հայտնենք ձեզ, Լենինգրադի բանվորներիդ՝ հերոսական աշխատանքի համար... Այդտեղ ես առաջին անգամ տեսա ձեզ՝ հաստոցից կապված...

— Ես հենց այդ մասին էլ ուզում էի պատմել,— ասաց Պրոխոր Դմիտրիևիչը, մի տեսակ մեղավոր տեսքով նայելով թոռնիկներին։— Ախր մեր դրությունը շատ ծանր էր. մենք ստանում էինք օրական երկու հարյուր գրամ հաց և ուրիշ ոչինչ։ Ես այնքան էի հյուծված, որ չէի կարողանում ոտքի վրա կանգնել։ Այդ պատճառով էլ ստիպված էի ինձ հաստոցին կապել որ չընկնեմ։ Եվ ահա այդ ժամանակ գործարան եկավ մի ինչ-որ անգլիացի թղթակից։ Նա եկել էր «Լենինգրադի վերջին օրերը» տեսնելու և նկարագրելու համար։

Եվ ահա նա մտավ մեր ցեխը, նայեց հին, նորոգված հաստոցներին, նայեց նիհար և դալուկ բանվորներին, հետո տեսավ ինձ՝ հաստոցին կապված և իսկույն մոտեցավ։

— Ձեզ ո՞վ է կապել հաստոցին։

— Ո՞վ պիտի կապի, ես ինքս։

— Իսկ ինչո՞ւ։

— Որովհետև շատ եմ թույլ, կարող եմ ընկնել։

— Եթե այդքան թուլացել եք, ինչո՞ւ տուն չեք գնում։

— Իսկ սրանք ո՞վ կպատրաստի,— ցույց եմ տալիս կողքիս դարսած արկերի տաշած կորպուսները։

— Իսկ ինչքա՞ն եք ստանում այդ աշխատանքի համար,— հարցնում է նա։

— Ամսական մոտ երկու հազար ռուբլի։

— Ի՞նչ կարելի է գնել այդ փողով։

— Համարյա ոչինչ,— ասում եմ։— Հիմա Լենինգրադում փողով գրեթե ոչինչ չես առնի։

— Ապա ինչո՞ւ եք ձեզ տանջում,— նորից հարցնում է նա։— Մի՞թե հույս ունեք, որ ձեր այս արկերը կփրկեն Լենինգրադը։

Ես նայում եմ նրան և հիշում ամերիկացուն։ Սա էլ նույնքան անընդունակ է հասկանալու մեզ, որքան նա։ Դե, որտեղի՞ց նրանք կարող են հասկանալ, թե ինչ բան է սովետական բանվորը։ Որտեղի՞ց պիտի հասկանան, որ ես աշխատում եմ ոչ թե փողի, այլ իմ երկրի, իմ քաղաքի, իմ գործարանի համար։ Եվ այն ժամանակ ես ասում եմ.

— Գիտեք ինչ, պարոն լավ մարդ, հիմա ինձ մի խանգարեք աշխատել, բայց խոստացեք, որ երբ կանցեն այս օրերը, երբ մենք կջախջախենք և հետ կքշենք ֆաշիստներին, դուք մի անգամ էլ կգաք այստեղ. այն ժամանակ ես կխոսեմ ձեզ հետ...

Թղթակիցը նայում է ինձ և քթի տակ ծիծաղում, ճիշտ ամերիկացու նման։

Երբ մենք ջարդեցինք ֆաշիստներին և նրանց դուրս շպրտեցինք մեր երկրից՝ նա այլևս չհամարձակվեց երևալ մեր կողմերում։

Ահա թե ինչու, սիրելիներս, ես այդպես վստահ ասում եմ, որ կապիտալիստները երբեք չեն հասկանա մեզ՝ սովետական բանվորներիս։ Դրա համար հարկավոր է, ա՛յ, այսպիսի ձեռքեր ունենալ,— ասաց Պրոխոր Դմիտրիևիչը, նորից մեկ պարզելով իր կոշտուկներով պատած ուժեղ ձեռքերը։



# ԱՐՄԵՆ

*(Հատվածներ պոեմից)*

*Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Սեպտեմբերն եկավ զանգի ղողանջով,
Արմենը նստած նոր դասարանում
Մոռացավ խկույն և՛ ամառ, և՛ շոգ,
Մոռացավ ընկեր, դասեր, օգնություն:

«Թե ուզեմ, պարզ է, կանցնեմ բոլորից,
Դասերը «կուտեմ» խնձորի նման...»
Միայն ձմռանը...— իսկ հիմա նորից
Աշնան հովերը կանչում են նրան:

Հրավառվել են անտառ ու այգի,
Մրգավան չէ, այլ մի յուղանկար,
Դե եկ ու նստիր այս եղանակին,
Խնդիրներ լուծիր հանրահաշվական:
Կանչում են գետի ջրերը անգամ,
Ա՜խ, ո՞վ է հիմա այնտեղ լողանում.
Իսկ ուսուցիչը անտարբեր այնքան
Մի ինչ-որ թվից տոկոս է հանում:
— Արմեն Դավոյան,— լսեց նա հանկարծ
Ու ոտքի ելավ ծանր տնքալով.
Աշնան վառվռուն գույները հանգան
Եվ մրրիկն ասես անցավ անտառով...
Սակայն խնդիրը ծանոթ է կարծես.
Պատասխանն արագ գտնում է տղան.
Կարո՞ղ է նստել. ի՞նչ, նորի՞ց հարցեր,
Պարզ է, կտրել է ուզում անպայման:
— Մտածիր Արմեն,— ուսուցիչն ասաց,—
Գիտեմ, կարող ես, քեզ բափ տուր տեսնեմ.
— Մսրամելիքն է,— Գոհարը փոքկաց,
Զայրույթը սրտում Արմենը նստեց:
— Գոհա՞ր, մի՞թե դու... այ, ափսո՛ս, ափսո՛ս...
Բավական էր այդ շիկնած աղջկան.
Մինչ արտասունքն էր սրբում նա անխոս,
Արմենն իր շուրջն էր նայում հաղթական.
Իբրև Գոհարը թե չխանգարեր,
Կպատասխաներ բոլոր հարցերին.
Մխիթարում էր Արմենն ինքն իրեն,
Սարսող հայացքով նայում շարքերին:
Դավաճան է ով խնդիրն այս լուծի.
Ով չի վախենում, թող փորձի, տեսնե՛մ.

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Թեկուզ և ընկեր Դուրյանը հարցնի,
Այսպիսի խնդիր չեն լսել, կասեն:
Լուռ են. ճիշտ այդպես դասերից հետո
Նստարաններն են մնում անկենդան.
Ճնշում է մարդու մի քարե անդորր,
Ժամանակը չէ. գոնե զանգը տան:
Սակայն ուսուցիչն այնպես անվրդով
Նշում է ահա, «երկուսն» Արմենի.
Ապա նայում է բոլորին հերթով.
— Ո՞վ գիտե հարցը, թող պատասխանի:
Արմենի գլուխն իջավ, ցածրացավ,
Ավոն գնում է գրատախտակի մոտ.
Ինչպես է խոսում՝ ազատ, համարձակ,
Դավաճան ընկեր, ամո՛թ քեզ, ամո՛թ:
Արմենն իր տեղում գալարվեց մի պահ,
Մինչ դասարանը ուրախ է ու գոհ,
Ուսուցիչն ահա նայում է հպարտ,
Խնդրությունն հոգու ամփոփում «հինգով»:
— Ապրե՛ս,—ասում է ու թեկուզ հոգնած,
Ժպտում է այնպես ջերմ ու մտերիմ.




— Իսկ հիմա նորից Արմենը թող գա,
Նույն դասը պատմի իր ընկերներին:



— Թութակը միայն կարող է կրկնել:
Նետում է տղան ու խուլ ծիծաղում.
— Կրկնիր, թե թութակ կարող ես լինել.
— Է, լավ չէ, Արմե՛ն, միշտ նույնն ես մնում:
Եվ հանկարծ զանգը... Արմենին թվաց
Իր հոգու մեջ է ղողանջը թնդում.
Հնչյունների հետ սիրտը թրթռաց
Ու նա բակ թռավ մի ակնթարթում:
«Պատճառն Ավոն է,— մտածում է նա,—
Ինձ տրված հարցին նա կպատասխանի՞.
Գոհարն էլ տեսնի և ուրախանա
Ու ձեռք առնելով վրաս ծիծաղի՞:



«Գնամ», մրմնջաց Արմենը անզուսպ
Ու փողոց ելավ այն մութ գիշերին.
Լուսնեղջյուրն ահա երկինքը կիսում,
Իջնում է նիրհող լեռան փեշերին:
Քայլում է տղան, ինքն իր հետ խոսում.
«Թողնեմ, որ ինձնից անցնի նա առա՞ջ»:
Ահա կամուրջը, ջրանցքը հոսում,
Թեքվում է դեպի դաշտերը կանաչ:
«Հողամասից էլ կհանենք մի օր,
Էլ ինչո՞ւ եմ ես չարչարվել այնքան.
Փառքի տիրանան Գոհարն ու Ավոն...
Ահա և այգին... Ո՛չ, Արմե՛ն, կա՛նգ առ...
Թերև, մեղմօրոր զեփյուռն է սահում,
Ստվերներն այգու խառնում է իրար.
Դողում է տղան և շուրջը նայում.
Թվում էր նրան բոլորն արթնանում,
Մարդիկ են թվում ծառերը նրան:
Քնած է գյուղը՝ ականջը հովին,
Բարձրախոսները լռել են վաղուց.
Լոկ ծղրիդներն են երգում խմբովին
Եվ աստղերն արծաթ անձրև են մաղում...
Կատվի պես զգույշ բարձրանում է նա,
Թերև ցատկումով նետվում այգու մեջ:
Իսկ եթե հանկարծ պահակն իմանա,
Կբռնի նա քեզ, ե՛տ դարձիր, Արմե՛ն...
Գալիս էիր դու ընկերներիդ հետ,
Ծառերն առաջին պտուղը վրան
Եվ ծաղիկներն այս բարմ ու բուրավետ
Գգվում էին քեզ մոր ձեռքի նման:
Մարգերն ես ջրել գիշերներն արթուն,
Հիմա ջարդում ես ավերիչ ձեռքով.
Ծաղիկներն ապշած, աչքերը թարթում,
Մեռնում են ահա հարվածներից քո:
Այսպես ամեն ինչ ոտքի տակ տալով,
Մոտենում է նա արևածաղկին.
Ահա «Գոհարը», որ բարձր է, կլոր,
Հովանոցի պես բացված ահագին:
— Դե՜ տարեք հիմա դուք ցուցահանդես.
Շողաց դանակը գիշերվա սրտում.
Արևածաղիկն ասես գլխատվեց,
Եվ հանկարծ շունը մոլտաց մթնում:
— Էդ ո՞վ է, է՜յ, հե՜յ,— պահակը սաստեց,
Բայց մինչ ծերուկը հասներ տղային,
Արմենը իրեն այգուց դուրս նետեց
Եվ ավարն առած ձուլվեց խավարին:
Վազում էր տղան, ընկնում էր, ելնում
Խաչմերուկներում շեղում էր ուղին.

Կանչում են իրար՝ բռնեցեք գողին:
Ավարը պահած նա տուն է մտնում.
Քնած է մայրը, չէ, չի շարժվում նա.
Առաջ է գալիս Արմենը մքնում,
Շորերով պառկում անկողնու վրա:

***

Արմենն հազիվ է մտնում դասարան.
Ասես բոլորը իրեն են նայում.
«Գիտեն, չգիտեն»,— խորհում է տղան,—
Ավոն ինչո՞ւ է այսօր ուշանում»:
Ահա նա եկավ. բարալիկ, նիհար
Եվ բարձր ինչպես մի ջահել բարդի.
Արմենն ու Ավոն նայեցին իրար,
«Ավոն տխուր է, ուրեմն գիտի»:
Սենյակ է մտնում Դուրյանը հանկարծ.
Զայրույթից ասես դողում է, հևում.
Աշակերտներին չի նայում անգամ.
— Նստեք,— ասում է և չի բարևում:
Արմենը ահից ուզում է ճչալ,
Գույնը գունատ, խոսո՞ւմ է արդեն.
Խեղդում է նրան լռությունը չար,
Ասես ձեռքեր են բարձրանում իր դեմ:
Լռությունն է սև սարի պես փլվում,
Կանգնում է Ավոն ու նայում նրան.
«Չպիտի գայի» Արմենը խորհում,
Աչքերն հառում է կիսաբաց դռան:

Խոսում է Ավոն, դառնացած Ավոն,
Գույն չկար նրա մռայլ երեսին.
— Ընկերնե՛ր, երեկ չարագործ մի գող
Մեծ աղետ բերեց մեր հողամասին:
Ո՞վ է այդ գողը... պարզ է, մերոնցից,
Տարել է «Դոհար» տեսակը մեր նոր.
Անհետացել են բանջարանոցից
Եվ սածիլների շարքերը բոլոր:
Մինչդեռ խոսում է Ավոն տաքացած,
Դոհարը հանկարծ ոտքի է կանգնում,
Ոտքի է կանգնում խռոխտ, համարձակ
Եվ մատը դեպի Արմենը մեկնում:
— Նա ուզում է, որ Մոսկվա չգնանք,
Որ չմասնակցենք ցուցահանդեսին.—
Թնդում է մեկից աղմուկ, աղաղակ,
Արմենն ահաբեկ ծլկում է հազիվ:
— Ուրեմն ճիշտ է... ամո՛թ քեզ, ամո՛թ...
Դուրյանը ասես ծանր հարվածից
Մի պահ կանգնում է պատուհանի մոտ,
Նայում է հեռուն և խոսում նորից.
— Վատը ծնվում է միշտ մարդու վարքից,
Նա կարող է և չարագործ դառնալ.
Վատ սովորողը ժամանակն անգին
Վատնում է այսպես չարության համար...
Իսկ դուք,— ասում է արդեն ժպտադեմ,—
Ընկերոջ մասին մտածեք էլի.
Արևածաղիկն ափսոս է, գիտեմ,
Բայց Արմենն, անշուշտ թանկ է ավելի...



## ՈՒՌԻՆ

ԳՐ. ՉԱԼԻԿՅԱՆ

— Մայրի՛կ, ասա՛, ինչո՞ւ ուռին
Առվի վրա տխուր թեքված՝
Արցունքներ է թափում լռին
Ու օրեցօր կռանում ցած:
Չէ՞ որ գլխին արև ունի
Ու ոտքի տակ դալար կանաչ,
Երգ է լսում նա բոչունի
Եվ զետակի զվարթ կարկաչ:
— Որդի՛ս, նա վիշտ ունի անմար
Եվ չես տեսնի նրան ուրախ,
Անպտուղ է՝ դրա համար
Լաց է լինում գլուխը կախ:

# ԹՄԲԻ ՎՐԱ

Գր. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ



Անակնկալ կերպով գիշերը ձյուն եկավ։ Առավոտյան նորից սպիտակել էին դաշտերը։ Դասերից հետո երեխաները գետնահարկերից հանեցին սահնակները, հավաքվեցին Արամիկենց տան հետևում գտնվող թմբի վրա և սկսեցին սահնակներով սլանալ ցած։

— Մի վախեցիր, ինձանից պինդ բռնիր,— բղավում է Արամիկն ու շրջում ցրտից կարմրած դեմքը։

— Առանց բռնելու էլ չեմ վախենում,— լսվում է Աստղիկի ուրախ ձայնը, և նա պինդ գրկում է տղային։

Սահնակը սլանում է ցած, հասնում մինչև տան առաջը և հարթ տարածության վրա դանդաղեցնելով ընթացքը, կանգնում։

— Դե՛, այժմ քո հերթն է,— ասում է տղան իջնելով,— բարձրացրու մինչև գագաթը։

Աստղիկը բռնում է սահնակի կապից, և շրջանցելով թումբը, բարձրանում վեր։ Արամիկը հետևում է։

— Իսկ այժմ ես ավելի արագ կքշեմ,— հպարտանում է աղջիկը և նստում սահնակի վրա։

— Ինձնից արագ քշել չես կարող, վախենում ես։

— Ե՞ս,— աղջիկը վիրավորվում է,— այդ դու ես, որ գոմ մտնելիս վախենում ես կովից և պատի տակով ես գնում։

— Ես տրակտորի վրա էլ չեմ վախենում։ Ռազմիկ եղբայրդ արագ քշում է, իսկ ես հանգիստ կանգնած նայում եմ շուրջս։

— Բայց կովից վախենում ես,— կրկնում է աղջիկը,— ինչո՞ւ ես վախենում...

Տղան մի պահ մտածում է, ուզում է հարմար խոսք գտնել Աստղիկին լռեցնելու համար, բայց չի գտնում։ Դա այնքան էլ հեշտ գործ չէ, որովհետև Աստղիկը միշտ մի բան գտնում է պատասխանելու։ Իսկ եթե չի գտնում, կրկնում է նա իր ասածը, կրկնում է մինչև որ տղան լռի։

— Ես ոչ մի բանից չեմ վախենում, բայց թե... կովը... կենդանի է, չի իմանում ինչ է անում, ա՛յ, տրակտորն ուրի՜շ է, նա մեքենա է, իսկ մեքենան հանկարծ չի խփի...

— Կովն էլ հանկարծ չի խփի, դու պարզապես չես իմանում մոտենալու ձևը և մի քիչ էլ... վախենում ես։

Արամիկը զգաց, որ ասելու խոսք չի գտնում, և այդ նրան խիստ վիրավորեց։ Նա կմկմաց, կմկմաց ու խռոված՝ դեմքը շուռ տվեց։

Գոհ իր հաղթանակից, աղջիկը տեղավորվեց սահնակի մեջ ու առանց շուռ գալու, ասաց.

— Դեհ, Արամի՛կ, նստի՛ր։

Տղան չպատասխանեց։

— Քե՛զ եմ ասում, նստի՛ր,— կրկնեց Աստղիկը ու նայեց տղային։

Արամիկը նայում էր հեռուները, ձյան սպիտակ սավանի մեջ փաթաթված բլուրներին ու ձորերին։

— Արամի՛կ,— ասաց այս անգամ աղջիկը մեղմ ձայնով,— նստի՛ր։

— Ես քեզ հետ չեմ խաղա,— խուլ ասաց տղան։

Աղջիկը զարմացավ։ Ի՞նչ էր պատահել Արամին։ Ինչո՞ւ նա հանկարծ չի ուզում խաղալ, երբ քիչ առաջ եկավ իրենց տուն և ասաց, որ գնան սահելու։ Եվ այնպե՛ս էր ուզում սահել, այնպե՛ս համոզում էր նրան։

— Ինչո՞ւ չես ուզում սահել— հարցրեց նա։

— Ես քեզ հետ խաղալ չե՛մ ուզում, հասկացա՞ր։— Տղան ցած վազեց թմբից, ներքևում

գլորվեց ձյան մեջ, վեր կացավ և առանց վրայի ձյունը մաքրելու վազեց տուն։

Աստղիկը զարմացած նայեց նրա հետևից, շրթները ուռեցրեց և սահնակից իջնելով, թմբի հակառակ կողմից գնաց դեպի Արամիկենց տուն։

***

Հալչող ձյան մեջ խորունկ ոտնահետքեր թողնելով տուն էր գալիս տրակտորիստ Ռազմիկը։ Նա հոգնած էր, ցեխոտված։ Հարևանի դռան մոտ նկատելով Արամիկին ու Աստղիկին, նա կանգնեց։

— Հը՞, օգնակա՛ն, որտե՞ղ ես, մեր տրակտորը խրվել էր արտի մեջ, ժամերով աշխատեցինք մինչև դուրս բերեցինք, իսկ դու չես գալիս օգնում։

Արամիկի դեմքի արտահայտությունը միանգամից փոխվեց. նա վազեց Ռազմիկի մոտ.

— Ո՞ր արտի մեջ էր խրվել,— նրա շնչառը լուրջ էր, դեմքը՝ մտահոգված։

— Անցյալ տարվա ցորենի արտում,— շարունակեց Ռազմիկը,— ես քեզ սպասում էի...

Արամիկը տհաճությամբ նայեց սահնակին, որի կապից բռնած կանգնել էր Աստղիկը։

— Ես սահնակ չեմ քշում. միայն երկու անգամ նստեցի, և... այլևս չեմ նստելու։

— Մի՛ էլ նստի, ես չե՛մ խնդրում,— ասաց Աստղիկը ոտքը գետնին խփելով։

— Սահնակ չեմ նստի, ես տրակտոր եմ քշելու։

— Տրակտո՜ր... դու տրակտորի վրա հազիվ ես բարձրանում։

— Քո գործը չէ, դու գնա կովերի մոտ,— տղան նայեց բարձրահասակ, ամրակազմ Ռազմիկին,— իսկ ե՞րբ ենք սկսելու հերկել։

— Երբ որ դաշտերը չորանան։— Ռազմիկն ուզում էր տուն մտնել, բայց հանկարծ կանգնեց։— Իսկ դուք, նորից կռվե՞լ եք։

— Ես նրա հետ չեմ կռվել,— պատասխանեց Արամիկը և մտքում սկսեց փնտրել ասելիքը,— ես չեմ կռվել, բայց... բայց նրա հետ չեմ խաղալու, նա... նա աղջիկ է, նա կովերին է սիրում, իսկ ես տրակտորիստ եմ դառնալու։

Ռազմիկը մոտեցավ երեխաներին։

— Ի՞նչ է պատահել, Աստղի՛կ,— դիմեց նա քրոջը։

— Ոչինչ էլ չի պատահել, դասերից հետո Արամիկը եկավ ինձ մոտ, մենք միասին հանեցինք սահնակը և սկսեցինք սահել։ Հետո... հետո հանկարծ նա ասաց, որ ինձ հետ չի ուզում խաղալ։

— Ինչո՞ւ չես ուզում խաղալ, Արամի՛կ.— Ռազմիկը մի պահ լռեց, հետո ավելացրեց.— չէ՞ որ դուք միասին եք սովորում, միասին պատրաստում դասերը. չէ՞ որ դուք լավ ընկերներ եք։

— Այո՛, բայց...

— Ի՞նչ բայց։

Տղան մի պահ նորից շփոթվեց։ Նա հիշեց Աստղիկի ասած խոսքերը, ուզեց այդ բոլորը պատմել Ռազմիկին.

— Բայց...

— Ասա՛, Արամի՛կ, մի՛ վախեցիր։

Վերջին խոսքերն Արամիկին ավելի հուզեցին։

— Ես չեմ վախենում, ես ոչ մի բանից չեմ վախենում, իսկ Աստղիկը ասում է... իսկ նա ասում է, որ ես... կովերից վախենում եմ։

— Ուրեմն դրա՞ համար է...

— Ճիշտ չի ասում. ես տրակտորի վրա էլ չեմ վախենում։ Ես պարզապես կովերին չեմ սիրում։

Ռազմիկը ժպտաց։ Նա շոյեց Արամիկի գլուխը, ձեռքը դրեց Աստղիկի ուսին։

— Դուք երկուսդ էլ լավ, խելոք երեխաներ եք,— ասաց նա,— դրա համար էլ իրար հետ չպետք է կռվեք։ Ա՛յ, երբ դաշտերը չորանան, Արամիկը դասերից հետո կգա և կօգնի ինձ, իսկ դու, Աստղի՛կ, կգնաս ֆերմա, Արամիկի քրոջը՝ Հայկուշին օգնելու։



Երեխաները անհանգիստ շարժում արեցին, բայց իրար չկարողացան նայել։

— Դուք կռվել եք պարզապես նրա համար,— շարունակեց Ռազմիկը,— որ իրար չեք հասկանում։

*Մեկդ ուզում է տրակտորիստ դառնալ, իսկ մյուսդ՝ կթվոր։ Երկուսն էլ շատ լավ գործեր են։ Տրակտորը եթե չհերկի, դաշտերը բերք չեն տա, և մայրիկը լավաշ չի թխի. իսկ եթե կովերին լավ չխնամենք, նրանք կաթ չեն տա և դուք պանիր ու կարագ չեք ունենա։*

*Երեխաները հիացած նայում են Ռազմիկին։*

*— Ամեն մարդ պետք է իր սիրած գործը անի,— ասաց նորից Ռազմիկը,— բայց ամեն մարդ պետք է սիրի նաև ուրիշի արած գործը։ Այդպես եթե մտածեք, իրար հետ չեք կռվի և ես ձեր երկուսի եղբայրը կլինեմ միշտ։*

*Երեխաները իրար նայեցին ու ժպտացին։ Ինչքան լավ էր այժմ ամեն ինչ, և՛ սահնակը, որի կապից դեռ բռնել էր Աստղիկը, և՛ բլրակը, որտեղ շարունակում են աղմուկով սահել երեխաները, և՛ քամին, որ ձյան փոշի բարձրացնելով, կարծես հսկա ավելով ավլում էր գետինը։*

*— Դե՛, այժմ վազեք թմբի վրա,— ասաց Ռազմիկը,— ես նայելու եմ, թե դուք ինչպես եք բոլորից արագ սլանում։*



*Մարտյան արևը դուրս սողաց ամպերի հետևից և իր շողերը գցեց դասարան, ուղիղ Արամիկի վրա։ Տղան կարծես սթափվեց և ժպտաց արևին, հետո հայացքով փնտրեց Աստղիկին։ Աղջիկը իրեն էր նայում։ Հետո երկուսով մի պահ նայեցին լուսամուտից երևացող երկնքի կապույտին և ժպտացին։*

*Այդ պահին երկու հրաշք տեղի ունեցավ։ Նախ հնչեց դպրոցի զանգը, որ դասերի ավարտն էր ազդարարում, և հեռվից լսվեց տրակտորի դղիրդը։*

*Արամիկը շտա՛պ հավաքեց գրքերը, դասավորեց պայուսակի մեջ և երեխաների արանքից դուրս սողալով գտավ Աստղիկին։*

*— Աստղի՛կ,— ասաց նա շտապ,— պայուսակը տուն տար, Ռազմիկը ինձ է սպասում։*

*— Իսկ ես ուզում էի իմ պայուսակը քեզ տալ,— ասաց աղջիկը, Հայկուշի կովը ծնել է, ուզում եմ գնալ հորթին տեսնելու։*

*Նրանք իրար նայեցին հուսահատված աչքերով։ Ինչպե՞ս լուծել այդ բարդ խնդիրը։*

*— Արի միասին վազենք տուն, առաջարկեց տղան և սկսեց արագ քայլերով իջնել դպրոցի սանդուղքներից։*

*— Վազե՜նք,— համաձայնեց աղջիկը և հետևեց նրան։*

*Շնչասպառ եղած նրանք տուն հասան, պայուսակները դրեցին սեղանին, դուրս եկան և վազեցին տարբեր ուղղությամբ։ Արևն ամպերի արանքից նայում էր նրանց։ Ֆերմայում բառաչում էին կովերը։ Տրակտորի ժխորը լցվում էր գյուղ, քամու թևերի վրա գնում, տարածվում հեռուները։*

## ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

*Մ. ՎԵՍՊԵՐ*

Տնկինե՛ր դալար, զվարթ ու սիրուն,
Տնկում եմ ահա ձեզ մեր պարտեզում,
Ջրում ցնցուղով ամեն իրիկուն:
Եվ մեկիկ-մեկիկ հետներդ խոսում...
Կըծագի գարնան արևը տաքուկ՝
Ոսկի շողերով ձեզ կփայփայի.
Ամեն օր ու ժամ կմեծանաք դուք,
Հողը՝ բարի մայր, ձեզ կյա՜նք կընծայի:
Չե՛մ թողնի, որ դուք տխրեք առանձին,
Չե՜մ թողնի անջուր արմատները ձեր,
Ինչպես սիրելի Միչուրին պապին՝
Ձեզ հետ կլինեմ, կխնամեմ ձեզ...
Ծաղկեցեք արագ՝ շաղով ու շողով,
Իմ մատղա՛շ ծառեր, իմ դալա՜ր ծառեր,
Դարձրեք պարտեզն այս՝ կանաչ ու զով,
Կախեք ճյուղերից քաղցրահամ մրգեր,
Որ հպարտ նայեմ ես ձեր հասակին,
Ձեր պտուղներին՝ թշերով քնքուշ,
Հովից օրորվող ձեր շարժ ու ձևին,
Եվ սիրտըս լցվի՜ խնդությամբ անուշ...:

# ԾՈՎԻ ՁԱՅՆԸ

(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Ամռանը ես հանգստանում էի ծովափնյա ամառանոցներից մեկում։ Իմ ամենամոտ հարևանը ինժեներ Վահան Մաշինյանն էր, որն աշխատում էր Մոսկվայի գիտա-հետազոտական ինստիտուտներից մեկում։

Նա բավականին թիկնեղ տղամարդ էր։ Հագնում էր կարճ թևքերով վերնաշապիկ և պարուսինե շալվար։ Վահանի աչքերը կարծես միշտ ժպտում էին և այն էլ խորհրդավոր ու փոքր-ինչ ծաղրական ժպիտով։ Նա շատ էր սիրում ձկնորսությունը։ Կարթը ջուրը գցելուց հետո, պառկում էր ափի տաք ավազների վրա և դանդաղ ու հաճույքով ծծում «Ոսկյա բանալին»։ Նա չէր սիրում, երբ ձկնորսության ժամանակ որևէ մեկը խանգարում էր իրեն։ Դա էր այն միակ պատճառը, որ նա միշտ աշխատում էր այնպիսի տեղ զբաղեցնել, ուր ձկներ չկային և ոչ մի ձկնորս չէր լինում։ Չնայած այդ հանելուկային և տարօրինակ արարքին, նա միշտ էլ տուն էր վերադառնում լիքը ձկնամանով։



Ամենից ուշագրավը նրա կարթն էր, որը ինժեներին ավելի խորհրդավոր էր դարձնում։ Վահանը կարթաձողին ամրացնում էր մի սև տուփ, որն ավելի շատ նման էր էլեկտրահաշվիչի։ Այդ տուփից դեպի կեռիկի վերևից կախված ցանցապատ գունդը ձգվում էր երկու զույգ լար։ Ես չէի կարողանում գուշակել, թե այդ բոլորը ինչո՞վ են օգնում ձուկ բռնելուն։ Իմ հարցերին նա ուղղակի պատասխան չէր տալիս, այլ միայն կատակով ասում էր.

— Մարդ այդքան հետաքրքրասեր չի լինի։ Ավելի լավ է սա վերցրու, «Ոսկյա բանալի» է, բերանդ կքաղցրացնես։

Նա ժպտում էր, երբ տուն էի վերադառնում դատարկ ձկնամանով։ Իսկ ինձ թվում էր, որ նրա խորամանկորեն կկոցած աչքերը պարզապես ծիծաղում են իմ անհաջողության վրա։

Մի օր էլ, երբ անհաջող որսից տրտմած տուն էի վերադառնում, նա սովորականի պես ժպտալով, ասաց.

— Տրամադրությունդ մի՛ գցիր, Գուրգե՛ն։ Ի՞նչ ձուկ է սիրտդ ուզում. վաղն անպայման կբռնեմ։

Ես նրան չպատասխանեցի։

— Քեզ հետ եմ, Գուրգե՛ն, ի՞նչ ձուկ բռնեմ։



Նայելով նրա ժպտացող դեմքին, ես ձեռքս թափ տվեցի։

— Բախտի բան է...

— Է՜... քսաներորդ դարում բախտն ի՞նչ գործ ունի։ Այժմ մարդու բախտը իր ձեռքերումն է գտնվում։ Մի՛ սպասեցնի, ասա՛։

— Թառափ,— գլուխս այդ համառ ու տարօրինակ մարդուց ազատելու համար, ասացի ես։

— Այդ դեպքում վաղը երեկոյան կանցնես ինձ մոտ՝ թառափ ուտելու։

Այդ օրից սկսած, ամեն երեկո, Վահանն ինձ իր մոտ էր հրավիրում։ Այդ օրից էլ նա ինձ համար ավելի խորհրդավոր և հանելուկային դարձավ։

Վահանը ամեն օր ձուկը բռնում էր իմ պատվերով։ Նա միշտ էլ պարտաճանաչությամբ կատարում էր իր խոստումը։ Սեղանի վրա լինում էր այն ձուկը, որը ես պատվիրած էի լինում նախորդ օրը։

Այսպես շարունակվեց մի ամբողջ շաբաթ։

Մի օր էլ, երբ ես գնացի Վահանի մոտ, դեռ միջանցքում ականջիս հասան ինչ-որ ձայներ։ Ես կանգ առա և զգուշությամբ ականջս դռանը հպելով, սկսեցի լսել։

Սկզբում, ընդհանուր աղմուկի մեջ ես ոչինչ չկարողացա զանազանել։ Բայց հանկարծ պարզորոշ լսվեց ծղրիդի արտասովոր ուժեղ ճռռոցը, որին խլացրեց մի ուժգին սուլոց, հետո լսվեց գորտի սարսափելի կռկռոցը։

«Օհո,— մտածեցի ես,— Վահանը կարծես թե որոշել է կենդանաբանությամբ զբաղվել»։

Ես արդեն պատրաստվում էի հրել դուռը, երբ լսվեց ականջ ծակող մի ճիչ և ինչ-որ մեկի թույլ հառաչանք։

Ես շփոթվեցի, ճակատս ծածկվեց քրտինքի կաթիլներով։

Ճիչը կրկնվեց։

Դողացող ձեռքերով, ենթադրելով, որ ներսում կտեսնեմ խեղդվող մարդու, ես դուռը բացեցի և ներս մտա։

Սակայն սենյակում տեսա միայն Վահանին, որը նստած էր ձայնագրող ապարատի առաջ։ Ինձ տեսնելուն պես, նա անմիջապես անջատեց մագնիտոֆոնը։ Ես նկատեցի, որ իմ անսպասելի այցից նա փոքր-ինչ շփոթվել է։

— Այդ ի՞նչ ճիչ էր, վերջապես այդ ի՞նչ հանելուկներով ես դու զբաղվում,— քրտինքս սրբելով, շշնջացի ես։

Վահանը գողության մեջ բռնվածի պես կարմրեց, գրպանից մի խիս հանեց, գցեց բերանը, հետո նստելով բազմոցին, բռնազբոսիկ ժպտաց ու ասաց.

— Գուրգե՛ն, ես քեզ ամեն բան կպատմեմ։ Ամե՛ն բան։ Միայն թե... մի քանի օր հետո։ Ես փորձարկում եմ մի նոր ապարատ, այնպես, որ առայժմ ոչինչ ասել չեմ կարող։

Նոր ապարատ... փորձարկում... Ահա թե ինչ... Նշանակում է Վահանը Լենքորան է եկել ոչ թե հանգստանալու, այլ փորձեր կատարելու համար։

Երեք օր շարունակ ես տանջվում էի հետաքրքրությունից։ Ո՞րն էր պատվերով ձուկ բռնելու գաղտնիքը։ Ի՞նչ ձայներ էին գրանցված մագնիտոֆոնի ժապավենի վրա։

Ես աշխատում էի այդ հարցերին բավարար պատասխան գտնել, բայց իզուր... Չորրորդ օրը վաղ առավոտյան ես արթնացա մի տարօրինակ ձայնից։ Առաջին պահին ինձ թվաց, թե այդ ձայնը լսել եմ երազում, բայց ձայնը նորից կրկնվեց, և ես քնից լրիվ սթափվելով, գլխի ընկա, որ այդ պատուհանի ապակիներն են թակում։ Անմիջապես վեր կացա և դուրս նայեցի։ Պատուհանի տակ կանգնել էր Վահանը, տարօրինակ կարթը ուսին դրած։

— Գուրգե՛ն... բարի լույս... չե՞ս գալիս ձկնորսության։

— Այս րոպեին,— պատասխանեցի ես, չնայած արդեն մշտական դարձած անհաջողությունների պատճառով այնքան էլ տրամադիր չէի ծովափ գնալու։

Շտապ-շտապ հագնվեցի, վերցրի ձկնորսական կարթաձողերն ու կեռիկները և դուրս եկա։

— Այդ ի՞նչ թանգարան ես հետդ ման ածում,— կատակով հարցրեց Վահանը։

Հիրավի, իմ կարթաձողերը կարծես թանգարանի էքսպոնատներ լինեին։ Նրանց մեջ կային ամեն տեսակի ու չափի կարթեր։ Հաջողության հասնելու մոլուցքով տարված ես դրանցից մի քանիսը խնդրել էի հարևան ձկնորսներից, մյուսներն էլ գնել էի։

Մենք որոշ ժամանակ լուռ քայլում էինք։ Առաջինը լռությունը խզեց Վահանը։

— Կարող ես շնորհավորել, —ասաց նա,—

փորձերս վերջացրել եմ։ Արդյունքները հրաշալի են...

— Մի՞թե...— չկարողանալով այլ կերպ արտահայտել իմ զգացումը, ասացի ես։

Նա մի փոքր լռեց ու բոլորովին անսպասելի հարցրեց.

— Դու գիտե՞ս, որ ձկները խոսում են։

— Դու էլի՞ կատակում ես։

— Բոլորովին։ Հավատացնում եմ քեզ, Գուրգե՛ն, որ ես լուրջ եմ խոսում։ Ձկներն իսկապես «խոսում» են։ Բայց նրանց, «խոսակցությունը» կարելի է լսել միայն իմ պատրաստած «ականջներով»։ Տեսնո՞ւմ ես այս ցանցապատ գունդը։ Դա գերզգայուն մեմբրանն է։ Նրա միջոցով ես որսում էի ձկների «խոսակցությունը» և ձայնագրում մագնիտոֆոնի ժապավենի վրա։ Անցյալ օրը իմ սենյակից դու հենց այդ ձայներն էիր լսել։

Մենք հասանք ծովափ։

— Տեղավորվենք հենց այստեղ,— առաջարկեց Վահանը։

— Ես մի փոքր հեռու կգնամ,— ասացի ես, նկատի ունենալով, որ նա չի սիրում ձկնորսության ժամանակ երկրորդ անձնավորության ներկայությունը։

— Այսօր միասին ենք բախտներս փորձելու,— խորամանկորեն ժպտալով ասաց Վահանը,— նստի՛ր...

Տեսնելով, որ նա արդեն կարթը հարմարեցրեց և նստեց ավազների վրա, ես էլ հետևեցի նրա օրինակին։

— Մոտ եկ, Գուրգե՛ն,— առաջարկեց նա։

Ես մոտեցա։ Վահանը բացեց կարթաձողի վրա գտնվող տուփի դռնակը։ Ներսում գտնվում էր մի թվատախտակ։ Ամեն մի թվի տակ գրված էր որևէ ձկան անուն։ Թվատախտակի վրա գտնվում էին կարմիր ու կապույտ սլաքներ։ Վահանը միացրեց տուփի աջ մասում գտնվող անջատիչներից մեկը։ Սլաքները իսկույն շարժվեցին։ Կարմիրը կանգնեց «թառափ» բառի վրա, իսկ կանաչը ուղիղ «500» նիշի դիմաց։

— Հինգ հարյուր մետրի վրա գտնվում է թառափի մի վտառ,— ասաց Վահանը,— ուզո՞ւմ ես հրապուրեմ։

— Ինչպե՞ս...

— Լույսի միջոցով։

Ես նոր հարց չտվեցի։ Վաղուց գիտեի, որ ձկները տարվա տարբեր եղանակներին մոտենում են դեպի որոշակի պայծառություն ունեցող լույսը։ Իհարկե, դա նորություն չէր, և այդ մեթոդով արդեն մի քանի տարի է, ինչ աշխատում են համարյա բոլոր ձկնորսական բազաները։

Մինչ այդ, Վահանը միացրեց մի այլ անջատիչ։ Ես նկատեցի, որ ջրի տակ սկսեց առկայծել մի շատ փոքրիկ էլեկտրական հզոր լամպ, որը, հավանական է, ամրացված էր կարթաձողի վրա։

Չանցած մի քանի րոպե, իմ կարթաձողը աղեղի պես կորացավ։

Ես կտրուկ շարժումով դուրս քաշեցի կարթաթելը, որի կեռիկին գտնվում էր մի փառահեղ թառափ։

— Շտապի՛ր,— ձայն տվեց ինձ Վահանը,— չե՞ս տեսնում... մյուսն էլ է կտցում...

Տասնհինգ րոպե հետո մեր ձկնամանները լիքն էին։ Եվ այն էլ ինչպիսի ձկներ...

— Կարծես թե այսօր բավական է, հը՞...— ասաց Վահանը և սկսեց հավաքել իր զարմանալի կարթը։

Ես վերցրի լիքը ձկնամանը, ուսիս հենեցի կարթաձողերը և հետևեցի Վահանին։ Մի առ ժամանակ ես չէի կարողանում ինքս ինձ համոզել, որ այդպիսի հարուստ որսի համար կորցված է ընդամենը կես ժամ։

— Մի խոսքով, դու լսում ես ծովի ձա՞յնը,— վերջապես եզրակացրի ես։

— Այդպես է ստացվում,— պատասխանեց Վահանը և գրպանից իրիս հանելով, մեկնեց ինձ,— վերցրո՛ւ, և այդքան էլ մի մտածիր։



## ՀԱՅՐԻԿԻ ԳԻՐՔԵՐԸ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Վահանիկի համար
Հայրը մի գիրք գնեց.
Շապիկ ունի նա լավ
Ու նկարներ մեծ-մեծ:
Վահանիկը նստած
Իր նոր գիրքն է «կարդում»,
Հրճվում է նա սրտանց
Ու ժպտալով թերթում:
Հետո հարցնում է նա
Իր հայրիկին այսպես.
— Ինչո՞ւ դու ինձ նման
Սիրուն գրքեր չունես:
Հայրը Վահանիկին
Պատասխան է տալիս.
— Անզարդ են գրքերն իմ
Ու քեզ դուր չեն գալիս,
Բայց երբ դու մեծանաս,
Լավ կարդալ սովորես,
Աննկար գրքերն էլ
Դու անչափ կսիրես:



## ԱՆՁՆՎԵՐ ՊԱՏԱՆԻՆ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

*Գետի մառախլապատ հեռվում բարձրանում էր կեսօրյա մանուշակագույն մշուշը: Երկու քույր ուրախ քրքջալով ձորն էին իջնում:*

*— Վալյա ջան, երեխայի ձեռքը մի թողնի,— ձայն տվեց մայրը վերևից:*

*Վալյան շտապում էր, քաշում փոքր քրոջ ձեռքից:*

*— Կամաց, քույրիկ ջան, կամաց,— տրտնջում էր փոքրիկը,— ոտքերս ցավում են:*

*Վալյան բաց թողեց փոքրիկի ձեռքը և եղնիկի նման ցատկեց քարերի վրայից:*

*Գետի ալեհեր կոհակները ծառս էին լինում, խփում ափերին, բյուրեղացած շիթերը փշրում ժայռերի վրա: Գազազել էր Հրազդանը, վշշում էր իր դարավոր ափերի մեջ սեղմված: Վալյան արդեն ջրի ափին էր: Փոքրիկ քույրը հոգնեց ու նստեց մի քարի: Մռայլ ամպերը թուջի քուլաներով կախվեցին կիրճերի հեռվում: Ցրտաշունչ մառախուղը խտացավ ու լցվեց ձորը:*

*Վալյան կռացավ ջրի վրա, իր փափլիկ ձեռքերով բռնեց ափի մոտից փախչող սառցի կտորը, որը հալչում էր նրա թաթիկներում և ադամանդե կաթիլներ դարձած ընկնում առափնյա ավազի վրա:*

*— Հասմի՜կ, Հասմիկ, տես ի՜նչ սիրուն է:*

*Փոքրիկը չէր կարողանում իջնել ջրի ափը. նա վախենում էր փրփրադեզ ալիքներից:*

*— Տուն գնանք, քույրիկ ջան, մրսում եմ,— կանչում էր նա:*

*Բայց Վալյան չէր լսում, ջրի ալիքներն ափի մոտից տանում էին անշնչացած թռչնակի սառած դին:*

*— Վա՜յ, վա՜յ, խեղճ ծիտիկ,— բացագանչեց Վալյան և ձեռքերն առաջ տարածեց: Նա չզգաց, թե ինչպես ոտքերը սահեցին, և ձորը մտած կատաղի քամին շառաչյունով արշավեց երեխայի վրա: Հանկարծ ջուրը բարձրացավ, փքվեց և ափ ելնելով, քաշեց մանկանը: Երեխան ճչաց, բայց արդեն ուշ էր:*

*Մառախլապատ երկնքով սահում էր արևի սառած սկավառակը: Երեխայի ճիչը տարածվեց*

սառն օդի մեջ. անցորդները կանգ առան։ Մի կին աղիողորմ ճիչ արձակեց։

— Երեխան ընկավ ջուրը, օգնեցեք,— բացագանչեց մեկ ուրիշը։ Մարդիկ իջեցրին վերարկուի բարձրացրած օձիքները և վազեցին ձորը։

Հրազդանի քարոտ ափերից վեր, անգղանիստ ժայռերի միջև կանգնած է տուֆաշեն լուսավոր մի շենք։ Դա դպրոցի շենքն է։ Աղմկող մարդկանց ձայները հասան այնտեղ։ Երեխաներն ու ուսուցիչները դուրս վազեցին։ Դուրս եկավ նաև ուսուցչուհի Աննան, նա մի պահ կանգ առավ սառած ջրհորդանի մոտ։ Ցուրտը շոյեց նրա հոգնած դեմքը, քամին շարժեց ալեխառն ծամերը։ Ցուրտ ու մառախլապատ օրը, շնչում էր ձմռան լիառատ շնչով, լեռներից իջնող մառախուղը լցվում էր ձորը։ Երեխաներն աղմկեցին։ Աննան քարացավ տեղում, և նրան թվաց, թե Հրազդանը դուրս եկավ իր հունից և արշավեց աշակերտների վրա։ Երբ ուշքի եկավ, տեսավ կողքին կանգնած գունատ Նորիկին։

— Նորի՛կ, Նորի՛կ...

Պատանու աչքերը փայլեցին տարօրինակ կրակով։ Նա ոչինչ չասաց, շուռ եկավ և վազեց նեղ արահետով։

Հրազդանն իր փրփրադեզ ալիքներում գալարում էր դեռատի աղջկա կիսաշունչ մարմինը։ Նա ձեռքը թափահարում, օգնություն էր աղերսում։ Նորիկը նկատեց ջրահեղձին։

— Նորի՛կ, Նորի՜կ,— նորից ականջին հասավ ուսուցչուհու ձայնը։

Պատանին հանեց բաճկոնը և առաջ նետվեց։ Գետն ավելի փոթորկվեց և իր գիրկն առավ սևաչյա պատանուն։ Մոլեգնած ալիքները խուժեցին դեպի ափ։ Ուսուցչուհին, որ բոլորովին մոտեցել էր ջրին, աչքերը փակեց։

— Վալյա՛, քույրիկ ջան,— ճչում էր ափում մնացած փոքրիկ աղջիկը։

Ուսուցչուհի Աննան հասավ երեխային ու գրկեց։ Այնտեղ, որտեղ գահավեժ ժայռերի միջև սեղմվում է գետը և փրփուրը բերնին մռնչում վիրավոր գազանի նման, Նորիկը հասավ ջրահեղձին։ Նա իր սառած ձեռքերով գրկեց աղջկան, ապա շուռ եկավ ալիքներին ընդդեմ։ Կատաղած ալիքները պատնեշի նման ծառս եղան... Նորիկը թուլացել էր. սառցապատող մարմինը ջղաձգաբար ցնցվում էր ցավից. պատանին ճեղքում էր հոսանքը, բայց նրան թվում էր, թե ափը փախչում է աչքից։ Նա վերջին անգամ լարեց ուժերն ու լողաց դեպի ափ։ Քիչ հետո պատանին ափ ելավ։ Նա իր սառած ձեռքերով ամուր գրկել էր խեղդվողի կիսաշունչ մարմինը։

— Նորի՛կ, սիրելիս,— ճչաց ուսուցչուհին։

Երբ հավաքված մարդիկ վերցրին աղջկան, Աննան գրկեց պատանուն, և մի հաճելի ջերմություն արևի ճառագայթի նման թափանցեց լողորդի սիրտը։ Նրանք մի պահ լուռ էին, խոսք չէին գտնում։

Վալյան բացեց աչքերը և նրա թույլ հայացքի առջև մշուշի մեջ երևացին պատանու կրակոտ աչքերը և շորերին կպած կարմիր վզկապը, որի ծայրերից ջուր էր կաթկթում։ Հրազդանն աղմկում էր առաջվա նման, ծեծում ժայռոտ ափերն ու թավալում իր արծաթյա ալիքները։








ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ա. ՉԻՖԼԻԿՅԱՆԻ

(Պիես երեք գործողությամբ վեց պատկերով)

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

*ՃԱՂԱՐՅԱՆ — դպրոցի դիրեկտոր.*
*ԱՐՄԱՆՈՒՇ — դաստիարակչուհի.*
*ԱՐՏԱՇԵՍ — ավագ ջոկատավար.*
*ՄԻՆԱՍ — դպրոցի պահակ.*
*ԱՇՈՏ — հինգերորդ դասարանի աշակերտ.*
*ԱՇԽԵՆ —Աշոտի մայրը.*
*ՋՈՆԻԿ — Աշոտի դասընկերը.*
*ՀԱՅԿՈՒՇ — Ջոնիկի մայրը .*
*ՇԱՄԱՄ — Ջոնիկի տատը.*
*ԱՐԵՎԻԿ — Ջոնիկի քույրը.*
*ԱՐՇԱԿ — կոլտնտեսության այգեպան.*
*ՀԱՅԿԱՆԴՈՒԽՏ — Շամամի հարևանուհին.*
*ԳԱՐՍԵՎԱՆ — Ջոնիկի նախկին դասընկերը.*
*ԲԺԻՇԿ.*
*ՍԵՐՈԲ, ԵՐՎԱՆԴ, ՎԱՐԴՈՒՇ, ՆՈՒՆԻԿ և այլ աշակերտներ.*

*Դեպքը կատարվում է ռեսպուբլիկայի շրջաններից մեկում։*

## ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՋԻՆ

### ՊԱՏԿԵՐ ԱՌԱՋԻՆ

*Վարդագույն քարից աղբյուր-հուշարձան. շուրջը՝ ծառեր։ Բարդու վրա՝ արագիլի բույն. մի ոտքի վրա կանգնած է արագիլը։ Լսվում է ավտոմեքենայի ազդանշան, որն աստիճանաբար հեռանում է։*

ԱՐՇԱԿ.— *(Մտնում է, ճամպրուկները դնում է աղբյուր-հուշարձանի մոտ և կանգ առնում։ Դիմացից գալիս է Մինասը)։*

— Բարի օր, Մինա՛ս ախպեր, ի՜նչ հրաշալի աղբյուր եք շինել... Ինչպե՞ս է առողջությունդ։

ՄԻՆԱՍ.— *(Մանր լսելու պատճառով ձեռքը հաճախակի մոտեցնում է ականջին)։* Հա՛, էլի դպրոցումն եմ աշխատում։ Երևանի՞ց ես գալիս։

ԱՐՇԱԿ.— Այո, գնացել էի այգեգործական դասընթացներում սովորելու։

ՄԻՆԱՍ.— էն որ կանաչին է տալիս՝ մեր դպրոցի նորատունկ այգին է. ես եմ երեխաներին սովորեցնում այգի մշակելը։ Դե՛, կներես, շտապում եմ. գործ շատ ունեմ. մի դպրոց՝ մի Մինաս... Ցտեսություն։

ԱՐՇԱԿ.— Ցտեսությո՜ւն։

ՄԻՆԱՍ.— Հը՞։

ԱՐՇԱԿ.— Ասում եմ ցտեսություն, ցտեսությո՜ւն.

ՄԻՆԱՍ.— Հա՜, գնում ես տուն։ Սպասի՛ր. ի՞նչ լավ բան ես բերել Երևանից։

ԱՐՇԱԿ.— Ինչ որ համապատասխան գտա։ Մինա՛ս ախպեր, սպասիր քեզ մի լավ մկրատ նվիրեմ, որ դպրոցի այգու ծառերի ճյուղերն էտես։

ՄԻՆԱՍ.— Ի՞նչ ես նվիրելու։

ԱՐՇԱԿ.— Մկրատ, մկրա՜տ *(արագ բացում է ճամպրուկներից մեկը, միջից հանում է տուփեր, փոքրիկ կապոցներ, իրեր. դարսում է ցանկապատի վրա։ Մի կապոցն ընկնում է խոտերի մեջ։ Գտնելով մկրատը պարզում է Մինասին)։* Առ, Մինա՛ս, իմ կողմից քեզ նվեր։

ՄԻՆԱՍ.— *(Վերցնում է մկրատն ու տնտղում)* Շնորհակալ եմ, Արշա՛կ ջան, ես էլ քեզ մի ուրիշ լավ բան կնվիրեմ. հիմա չէ, վաղը... Ցտեսություն։ *(Գնում է)։*

ԱՐՇԱԿ.— Այ քե ծերացել է, հա՜։ *(Արագիլը կտցով կտկտացնում է. Թռչունները ծլվլում են ու թռչկոտում։ Հավաքում է իրերը, լցնում ճամպրուկի մեջ, մոռանում է տեղավորել ընկած կապոցը։ Լվացվում է)։* Օխա՜յ, ի՜նչ լավ ջուր է, ի՜նչ սառն է. զորանաս աղբյուր կառուցող. *(խմում է և գնում։ Գալիս են Աշոտն ու Ջոնիկը՝ մի-մի բահ ուսերին դրած։ Կանգ են առնում աղբյուրի մոտ)։*

ԱՇՈՏ.— Ջոնի՛կ, ծարավ չե՞ս...

ԶՈՆԻԿ.— Ծարավ եմ (*ջուր են խմում։ Լսվում է արագիլի կտկտոցը*)։ Վա՛ն, ի՞նչ ձայն էր. (*Նայում է վեր*) դանո՜, արագիլն է եկել։ Աշո՛տ, արագիլին նյուր պիտի գնամ, (*փաթաթվում է բարդուն*)։

ԱՇՈՏ.— Զոնի՛կ, ի՞նչ ես անում... Ընկեր Արմանուշը չասա՞ց, որ արագիլը դաշտային մկներ, մողեսներ ու օձեր է ոչնչացնում։

ԶՈՆԻԿ.— Թող ոչնչացնի, դեմ չեմ, բա չիմանա՞մ, թե արագիլն ինչպես է պարում...

ԱՇՈՏ.— Զոնի՛կ, արի ժամանակ չկորցնենք, գնանք մեր աշխատանքին. թե չէ տղաները մեզանից շուտ կգան և մեզ կսպասեն։

ԶՈՆԻԿ.— Աշո՛տ, մի րոպե, շաբաթօրյակ ենք գնում էլի. որ մի քիչ ուշանանք, գործը հո՛ չի տուժի... (*բարձրանում է ծառը*)։

ԱՇՈՏ.— (*Ձեռքը թափահարելով*) Է՜, ասացի կարիք չկա։

ԶՈՆԻԿ.— Մի րոպե, մի րոպե (*շարունակում է բարձրանալ. արագիլը անհանգստանում է, թափահարում է թևերն ու նայում ցած։ Զոնիկը ձեռքը մեկնում է դեպի արագիլը, արագիլը կտցով խփում է նրա ձեռքին ու գլխին*)։ Վա՜յ, գլուխս, գլուխս (*սղղալով իջնում է ցած*)։

ԱՇՈՏ.— (*Ծիծաղելով*) Տեսա՞ր, չլսեցիր ինձ...

ԶՈՆԻԿ.— (*Նայում է դեպի վեր*) Լավ, ջուր խմենք ու գնանք։ (*Աշոտը ջուր է խմում ու քաշվում մի կողմ։ Զոնիկը՝ խմելիս հանկարծ նկատում է կապոցը*) Ջա՛ն, գտա՛, գտա՛ (*գրկում է կապոցն ու պտտվում*)։

ԱՇՈՏ.— Զոնի՛կ, մի՛ վերցրու, թող մնա. տերը կգա՝ կտանի։

ԶՈՆԻԿ.— Ոչ, ի՞նչ ես ասում, ես եմ գտել, ուրեմն իմն է։ Բա որ անցյալ օրը կինոյի շենքի դռանը մի ինքնահոս գրիչ գտար, տվեցի՞ր ինձ...

ԱՇՈՏ.— Ինքնահոսը ճանաչեցի տիրոջը։

ԶՈՆԻԿ.— Է՜, թող չճանաչեիր։

ԱՇՈՏ.— Զոնի՛կ, լավ բան չես անում։ Ուրիշի իրերին ինչպես կարելի է տեր դառնալ. չէ՞ որ մենք պիոներներ ենք...

ԶՈՆԻԿ.— Ինչ անենք... Կապոցը կտանեմ մեր տուն, ոչ ոք էլ չի իմանա։ Ոչ ոքի բան չասես հա՜, թե չէ... օ՜ֆ, գլուխս ոնց ցավեց, է... Շաբաթօրյակի չե՛մ գա, կգնամ տուն... Կապոցի մեջ որ լավ բաներ եղան, քեզ էլ բաժին կհանեմ։

ԱՇՈՏ.— Ինձ ոչ մի բան էլ պետք չի։ Զոնի՛կ, սխալ ես կատարում, կզղջա՛ս։

ԶՈՆԻԿ.— Չեմ զղջա. դե՜, ես գնացի. դպրոցում կասես Զոնիկը հիվանդ է։ (*Սուլելով գնում է, արագիլը կտկտացնում է ու թևերը շարժում*)։

ԱՇՈՏ.— (*Մտախոհ*) Այ քեզ փորձա՜նք... Հիմա ինչպե՞ս վարվեմ...

*Վարագույր*

## ՊԱՏԿԵՐ ԵՐԿՐՈՐԴ

*Աջ կողմից երևում է դպրոցի շենքի ճակատը։ Դիմացը բակն է, որի շարունակությունը կազմում է դպրոցամերձ նորատունկ այգին։ Ճաղարյանը դպրոցի մուտքի մոտ, աթոռին նստած թերթ է կարդում։ Լսվում է ավտոյի սուլոցը։*

ՄԻՆԱՍ.— Ավտոն եկա՜վ, ավտոն եկա՜վ։

ՃԱՂԱՐՅԱՆ.— (*Բարձր*) Քեռի՛ Մինաս։

ՄԻՆԱՍ.— Հրամմե՛, ընկեր Ճաղարյան։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Շոֆերի հետ տնկիները դասավորեցեք այ այնտեղ՝ պատի տակ, մինչև երեխաները գան։

ՄԻՆԱՍ.— Այսօր շատ լավ եղանակ է, լավ կաշխատենք. թե երեկոյան էլ անձրև գա, լավ կլինի, կտեսնես՝ ի՞նչ այգի կունենանք...

ՃԱՂԱՐՅԱՆ.— Իհարկե, իհարկե... (*Հետզհետե մոտենում է «Պիոներական ծառատունկ» երգը։ Մի խումբ աշակերտներ բահերն ուսերին դրած մոտենում են Ճաղարյանին։ «Բարև ձեզ, ընկե՛ր Ճաղարյան» ասելով կանգ են առնում։ Ճաղարյանը պատասխանում է դպրոցականների բարևին*)։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Դե՛, երեխաներ, տնկիները ձեզ են սպասում։

ԱՐՏԱՇԵՍ.— Ընկեր Ճաղարյան, ով իր ծառը լավ մշակի և լավ բերք ստանա, կարո՞ղ է գնալ Մոսկվա՝ Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդես։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Իհարկե կգնա։ (*Ընդհանուր աշխուժություն*)։ Արմանո՛ւշ, ձեր դասարանից բացակայողներ չկա՞ն։

ԱՐՄԱՆՈՒՇ.— Կան, Աշոտն ու Զոնիկը։

ԱՇՈՏ.— (*Շնչասպառ*) Ես այստեղ եմ, այստեղ։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Իսկ ո՞ւր է Զոնիկը։

ԱՇՈՏ.— (*Ընկճված և մտախոհ*) Զոնիկը իրեն վատ զգաց, վերադարձավ տուն։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Ափսո՜ս... Լավ, հետո կխոսենք։ Երեխաներ, Մինաս քեռուց ստացեք տնկիներն ու անցեք աշխատանքի։



*(Սկսվում է աշխատանքի եռուզեռը)։ Լսվում է ծառատունկի երգը)։*

ԱՐՏԱՇԵՍ.— Ընկե՛ր Ճաղարյան, ես կիմանամ, թե Զոնիկն ինչու չի եկել։ Անցյալ օրն էլ պիոներական հավաքույթին չկար։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Լավ: *(Լսվում է հեռախոսի ձայնը)*. Արտաշես, երեխաներին օգնիր, տեսնեմ ո՞վ է զանգահարում: *(Գնում է)*։

ԱՐՇԱԿ.— *(Գալիս է, գիտելով շուրջը)* Ի՞նչ հրաշալի է:

ՃԱՂԱՐՅԱՆ.— Բարև, քեռի Արշակ: Այս որտե՞ղ էիր:

ԱՐՇԱԿ.— Բարև, ընկեր Ճաղարյան, Երևանում էի:

ՃԱՂԱՐՅԱՆ.— Իսկ հիմա՞...

ԱՐՇԱԿ.— Մի փոքրիկ գործ ունեմ:

ՃԱՂԱՐՅԱՆ.— Ի՞նչ գործ:

ԱՐՇԱԿ.— Առավոտյան աղբյուրի մոտ մի կապոց եմ մոռացել, վերադարձա՝ տեսա չկար:

ՃԱՂԱՐՅԱՆ.— Ո՞վ կարող է վերցրած լինել:

ԱՐՇԱԿ.— Տուն գնալիս տեսա, որ դեպի աղբյուրն էին գալիս ձեր դպրոցականները... գուցե նրանցից մեկն ու մեկը վերցրած լինի:

ՃԱՂԱՐՅԱՆ.— Իսկ ի՞նչ կար կապոցի մեջ:

ԱՐՇԱԿ.— Է՛հ, ի՞նչ ասեմ, մանր-մունր գործիքներ:

ՃԱՂԱՐՅԱՆ.— Լավ, Արշակ քեռի, ես կասեմ դպրոցի ավագ ջոկատավարին: Թող նա հետաքրքրվի, երբ գտնվեց՝ կվերադարձնենք:

ԱՐՇԱԿ.— Կներեք, որ անհանգստացրի ձեզ...

ՃԱՂԱՐՅԱՆ.— Ոչինչ, ոչինչ...

ԱՐՇԱԿ.— Ցտեսություն *(գնում է։ Մոտենում է Արտաշեսը)*։

ՃԱՂԱՐՅԱՆ.— Արտաշե՛ս, իմացա՞ր, թե ինչո՞ւ Զոնիկը շաբաթօրյակի չի եկել:

ԱՐՏԱՇԵՍ.— Դեռ ոչ, ընկեր Ճաղարյան... *(Լսվում է ծառատունկի երգը)*։

ՃԱՂԱՐՅԱՆ.— *(Մտազբաղ)* Տղաները լավ են աշխատում... Լավ այգի կունենանք:

*Վարագույր*

## ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ ԵՐԿՐՈՐԴ

### ՊԱՏԿԵՐ ԵՐՐՈՐԴ

*Աշոտենց տունը։ Աշխենը մեքենայով կար է անում։*

ՇԱՄԱՄ.— *(Ներս է մտնում և դիմում Աշխենին)* Աղջի՛, Զոնիկը ծառատունկից վերադարձել է, ասում է՝ հիվանդ եմ. տրամադրությունն էլ վատ է: Աշոտը չգիտի՞, թե ինչ է պատահել:

ԱՇԽԵՆ.— Շամամ մայրիկ, հենց որ Աշոտս գա, կուղարկեմ ձեզ մոտ, նրանից ավելի շուտ կիմանաս... Կռիվ արած չլինի՞...

ՇԱՄԱՄ.— Է՞հ, ես ի՞նչ գիտեմ, Աշխեն ջան... շտապում եմ, Զոնիկի հայրը, գիտես էլի շաբաթներով տուն չի գալիս, մայրն էլ այգեգործական բրիգադի աշխատանքներով է զբաղված. ես եմ, որ տունը մի կերպ կառավարում եմ: Աշոտն անպայման թող գա, շատ անհանգիստ եմ *(գնում է)*։

ԱՇՈՏ.— *(Երգելով ներս է մտնում)*։

*Հոսիր, ջրի՛կ,*
*Հոսիր ցած,*
*Մի ծառ ունեմ*
*Նոր տնկած...*

ԱՇԽԵՆ.— Աշո՛տ, Զոնիկը շաբաթօրյակի չէր եկե՞լ:

ԱՇՈՏ.— *(Զարմացած)* Եկել էր:

ԱՇԽԵՆ.— Բա ինչո՞ւ է վերադարձել:

ԱՇՈՏ.— Դու ի՞նչ գիտես, մայրի՛կ:

ԱՇԽԵՆ.— Միտը լուր բերեց:

ԱՇՈՏ.— Ոչ, երևի Զոնիկն է եկել... բան չի՞ թողել մեզ մոտ...

ԱՇԽԵՆ.— Ի՞նչ պիտի թողներ:

ԱՇՈՏ.— Պայուսակը... դե գնամ լվացվեմ, քաղցած եմ *(գնում է)*։

ԱՇԽԵՆ.— Չէ, երևում է մի բան կա:

ԱՐԵՎԻԿ.— *(Մտնում է)* Բարև մորաքո՛ւյր:

ԱՇԽԵՆ.— Բարև, Արևի՛կ ջան, նստիր:

ԱՐԵՎԻԿ.— Շնորհակալություն:

ԱՇՈՏ.— *(Գալիս է երեսը սրբելով)* Վա՛յ, բարև, Արևի՛կ, չնկատեցի:

ԱՐԵՎԻԿ.— Աշո՛տ, Զոնիկն ասում է վաղն ի՞նչ դասեր ունենք:

ԱՇՈՏ.— Ի՞նչ է անում նա:

ԱՐԵՎԻԿ.— Պառկած է, ասում է՝ հիվանդ եմ. հետո ասաց, որ գնաս իրեն տեսնելու:

ԱՇՈՏ.— Արևի՛կ, մի բան պիտի ասեմ, բայց պիոներական ազնիվ խոսք տուր, որ ոչ ոքի չես ասի:

ԱՐԵՎԻԿ.— Ազնիվ պիոներական խոսք՝ չեմ ասի:

ԱՇՈՏ.— Զոնիկը մի կապոց է բերել տուն, դու չգիտե՞ս, թե ինչ կար կապոցի մեջ:

ԱՐԵՎԻԿ.— *(Զարմացած)* Կապո՞ց, ի՞նչ կապոց, ինչո՞ւ է բերել, ո՞ւմն է, որտեղի՞ց, ասա՛, ասա՛:

ԱՇՈՏ.— Լավ, լավ վրա մի՛ տուր: Ուրեմն, ոչ ոքի բան չես ասելու, Զոնիկին էլ:

ՍԵՐՈԲ.— *(Դրսից)* Աշո՛տ, այ Աշո՛տ:

ԱՇՈՏ.— *(Պատուհանից)* Ո՞վ է *(Դուրս է գալիս բակ։ Հայտնվում են՝ Սերոբը, Երվանդը, Վարդուշը)* Ի՞նչ կա:

ՍԵՐՈԲ.— Ինչպե՞ս թե՝ ինչ կա. հորթի կերակրելու ժամանակն է, ի՞նչ է, մոռացե՞լ ես:

ԱՇՈՏ.— Վա՞յ, մոռացել էի. *(լսվում է հորթի բառաչը)*։

ՍԵՐՈԲ.— Մինչև Նունիկը ֆերմայից հորթի բաժին կաթը բերի, եկեք հորթին ըղղացնենք: Դե՛, ժամանակ չկորցնենք: Աշո՛տ, դու տաք ջուր բեր... Նունիկն ինչո՞ւ ուշացավ... Երվա՛նդ, դու գնա հորթին բեր: Իսկ Զոնիկն ո՞ւր է:

ԱՇՈՏ.— Հիվանդ է. *(գնում է)*։

ՍԵՐՈԲ.— Լավ, հետո կգնանք տեսնելու: Շո՛ւտ արեք, տղերք, գործի անցնենք: *(Պատրաստություն են տեսնում, քշտում են թևերը)*։

ԵՐՎԱՆԴ.— Ահա և մեր հորթը: *(Հորթը բառաչում է)*։

ԱՇՈՏ.— *(Դույլով ջուր է բերում)* Սա՛ էլ ջուրը:

ՆՈՒՆԻԿ.— *(Գալիս է)* Ա՛յս էլ հորթի կերը *(ցույց է տալիս շիշը)*։

ԵՐՎԱՆԴ.— Բաղնիքից հետո հորթի ախորժակը կբացվի... Սա որ մեծացավ, տոնածառերով կաթ կտա:

ՄԻԱՍԻՆ.— Պահո՛...

ԵՐՎԱՆԴ.— Բա՛ ի՞նչ եք կարծում, սա սովորական հորթ չի: Մի՞թե աչքերից չի երևում... *(ծիծաղում է)*։

ՍԵՐՈԲ.— Լավ, սկսենք *(Լողացնում են հորթին. հորթը բառաչում է)*։

ՆՈՒՆԻԿ.— Ջա՜ն, ջա՜ն, ի՛նչ քաղցր ձայն ունի մեր հորթը:

ԵՐՎԱՆԴ.— Ես մի ոտանավոր եմ գրել մեր հորթի մասին, կուզե՞ք կարդամ: *(Կարդում է)*։

### *ՄԵՐ ՀՈՐԹԸ*

*Ջա՜ն, գարուն է, ջա՜ն գարուն,*
*Մի հորթ ունենք շատ սիրուն,*
*Բայց մեր հորթը չար է շատ,*
*Եվ սիրում է անուշ կաթ.*



*Կաթն ուտում է դուրս թռչում,*
*Կանաչներում թռչկոտում։*

*(Բոլորը ծափ են տալիս)։*

ԱՇՈՏ.— Եկեք այս ոտանավորն ուղարկենք «Պիոներ կանչ» թերթին, ազնիվ խոսք՝ կտպեն:
ԱՐՏԱՇԵՍ.— *(Գալիս է)* Բա՛րև ձեզ:
ՄԻԱՍԻՆ.— Բա՛րև, ընկեր Արտաշես:
ԱՐՏԱՇԵՍ.— Հը, ինչպե՞ս է հորթը, մեծանո՞ւմ է:
ԵՐՎԱՆԴ.— Էն էլ ո՞նց, ոչ թե օրեցօր, այլ ժամառժամ:
ՆՈՒՆԻԿ.— Ընկեր Արտաշես, Երվանդը ոտանավոր է գրել. լավ կլինի՝ մեզ նկարես մեր հորթի հետ, նկարն էլ ուղարկենք, գուցե թերթում տպագրեն...
ԱՐՏԱՇԵՍ.— Ուրախությամբ, ապա, դասավորվեցեք: *(Հորթը թառաչում է)* Չեղա՛վ, չեղավ:
ԵՐՎԱՆԴ.— Ոչինչ, ընկե՛ր Արտաշես, թող ձայնն էլ նկարվի: *(Ծիծաղ)։*
ԱՐՏԱՇԵՍ.— Ուշադրություն... Պատրաստ է: Դե՛ ես գնացի *(գնում է)։*
ԵՐՎԱՆԴ.— Անմահացանք, տղերք:
ՆՈՒՆԻԿ.— Չգնա՞մ մի կապոց թարմ խոտ բերեմ հորթի համար:
ԱՇՈՏ.— *(Հանկարծակիի եկած)* Ի՞նչ, ի՞նչ ասացիր, Նունիկ, ի՞նչ կապոց:
ՍԵՐՈԲ.— Ինչո՞ւ զարմացար, կապոց էլի՞, Նունիկն ուզում է հորթի համար կապոցով թարմ խոտ բերել:
ԱՇՈՏ.— Հա՛, ես էլ կարծեցի...
ՍԵՐՈԲ.— Չէ, չէ, դեռ շուտ է. հորթին չի կարելի կանաչ խոտ տալ, փորիկը կցավի:
ԵՐՎԱՆԴ.— Մեր տանը փորացավի դեղ կա, կբերեմ, կտանք հորթին:
ՍԵՐՈԲ.— Լավ, հիմա գնանք մեր դասերը պատրաստենք: Ցտեսությո՛ւն, Աշոտ: *(Գնում են)։*

ԱՇՈՏ.— *(Մեկուսի)* Կապո՛ց... *(տանում է հորթին)։*
ԳԱՐՍԵՎԱՆ.— *(Գլխիկոր անցնում է Աշոտենց տան ցանկապատի մոտով)։* Չէ, այսպես չի լինի, մի բան պիտի մտածել, *(խփելով գլխին)* ա՛յ իմ դդում գլուխ:
ՋՈՆԻԿ.— *(Դեմ գալով նրան)* Բարև՛, Գարսո ջան, ո՞ւր ես գնում:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Է՜, Ջոնիկ ջան, գործերս լավ չեն:
ՋՈՆԻԿ.— Ինչո՞ւ:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Աշխատանքից հեռացրին:
ՋՈՆԻԿ.— Վա՜հ, ինչո՞ւ. մեքենատրակտորային կայանի արհեստանոցում էիր աշխատում, չէ՞:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Ըհը՛... Բայց հեռացրին:
ՋՈՆԻԿ.— Ախր ինչո՞ւ:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Որ շատ ես ուզում, ախպեր ջան, կասեմ *(նստում են)*, հանկարծ դու էլ իմ օրին չընկնես...
ՋՈՆԻԿ.— Ասա՛, ասա՛:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Արդեն գիտես, թե դպրոցից ինչու համար դուրս եկա, բոլոր դասատուները հետս ընկած էին...
ՋՈՆԻԿ.— Բա տղաներն ասում են, թե դու ուսուցչանոցի սեղանի սփռոցն էիր գողացե՜լ...
ԳԱՐՍԵՎԱՆ.— Ինձ չե՞ս հավատում, էդ տղաներին ես հավատո՞ւմ: Նրանք ստում են... Մեքենատրակտորային կայանում էլ ուրիշ բան ստացվեց:
ՋՈՆԻԿ.— Ի՞նչ բան:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Երեկ մեր արհեստանոցն եկավ մի անծանոթ ինժեներ-մեխանիկ, պայուսակը թողեց արհեստանոցի պահարանում ու դիրեկտորի հետ չգիտեմ ուր գնաց: Աշխատանքը վերջացել էր, բայց պայուսակի տերը չկար ու չկար, ես էլ տուն տարա:
ՋՈՆԻԿ.— Հետո, հետո, իսկ ի՞նչ կար պայուսակում:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Երկու կապոց փող, բոլորը քսանհինգ ռուբլիանոցներ:
ՋՈՆԻԿ.— *(Զարմացած)* Է՞լ:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Մի լավ երեսսրբիչ, ատամի խոզանակ, ատամի փոշի, օճառ ու թղթեր... ու էլի ուրիշ մանր-մունր բաներ:
ՋՈՆԻԿ.— Իսկ ինչպե՞ս իմացան, որ դու էիր տարել:
ԳԱՐՍԵՎԱՆ.— Է՜հ, Ջոնիկ ջան, ամեն տեղ էլ մի վատ մարդ կա: Ես կասկածում եմ ընկերոջս՝ Սենիկի վրա: Տուն հասա թե չէ, երկու հոգի հետևիցս ներս մտան ու հո՛պ բռնեցին, էլ ի՞նչ կարող էի անել:
ՋՈՆԻԿ.— *(Անհանգիստ)* Երբ կարողանայիր շուտ թաքցնել...
ԳԱՐՍԵՎԱՆ.— Չհասցրի: Բա, ախպե՛րս, դրա համար ինձ աշխատանքից հեռացրին: Ինձնից քեզ խրատ ուրիշի ապրանքին աչք չդնես... տեսնենք ինչ կլինի վերջս... *(Գնում է)։*
ՋՈՆԻԿ.— Հը՜մ... ես հո չեմ գողացել, գտել եմ: Ոչ ոք էլ չգիտի, մի՞թե Աշոտն ինձ կդավաճանի: Չէ՜, գնամ նորից զգուշացնեմ, որ ոչ ոքի չասի... *(Գնում է)։*

*Վարագույր*

(Շարունակելի)



# ՊԱՐԾԵՆԿՈՏԻ ՎԵՐՋԸ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Վ. ՇԱՐԱՆԲԵՅԱՆԻ

Արտակարգ դեպք էր պատահել մկների աշխարհում։ Ասենք այդպիսի դեպքեր միայն մկնաշխարհում չէ, որ պատահում են։ Կես գիշերին պարծենկոտ մի մկնիկ վեր էր կացել տեղից, մաքրել կեղտոտած մարմինը, ոլորել ցախավելի նման ցցված բեղերը և մի ուրախ երգ էր ծվծվում։

Նա հագել էր փայլփլուն, երկարաճիտ կոշիկներ, կեռ թուրը կախել կողքից ու հանդիսավոր քայլում էր մեկ առաջ, մեկ՝ ետ։

— Չը՛խ, չը՛խ, չը՛խ...— մառանում լսվում էր նրա խթանավոր կրունկների չխչխկոցը։

Այդ արտասովոր աղմուկից արթնանալով՝ բըներից դուրս էին թափվել բոլոր մկները և զարմացած դիտում էին իրենց ցեղակցին։

— Այս ի՞նչ բան է, մկնիկ ախպեր, ինչո՞ւ ես զենք ու զրահ կապել, չլինի՞ ռազմաճակատ ես մեկնում,— հարցրեց տարեց մի մուկ։

Մուկը ոլորեց երկար բեղերը և բացագանչեց.

— Մենք բոլորին պետք է ցույց տանք, որ մկներս էլ ընդունակ ենք մեծամեծ քաջագործությունների։ Այսօր ես որոշել եմ անտառ գնալ և որսորդությամբ զբաղվել։ Տեսնո՞ւմ եք,— ցույց տվեց նա կողքից կախած կեռ թուրը,— հենց սրանով եմ գետնին փռելու առյուծներին ու վագրերին...

Մի քանիսը սարսափահար իրենց բները մտան. բայց տեսնելով, որ մառանում ոչ առյուծ կա, ոչ վագր և ոչ էլ կատու, նորից դուրս եկան՝ քաջ որսկանին դիտելու։

Առնետի մեծությամբ մի մուկ հպարտ նայեց իր խիզախ ցեղակցին, ապա մոտեցավ, շնորհավորեց նրան քաջության համար և մաղթեց, որ թուրը կտրուկ լինի այդ սարսափելի, մեծ կատուների նկատմամբ։

Ու բոլոր մկները ոգևորվեցին և հաջողություն ցանկացան նրան։

Քաջ որսկանը հանդիսավոր խոստում տվեց իր ցեղակիցներին.

— Իմ ազնի՛վ բարեկամներ, անհոգ կացեք. վաղ առավոտյան ես կվերադառնամ անտառից, հետո էլ անպայման ձեզ համար որսի միս կբերեմ։

***

Լուսնյակ գիշերով որսկանը հասավ անտառ։ Մի պահ կանգ առավ, լսեց անտառի ձայները, ապա մեկ էլ ոլորեց անհնազանդ բեղերը և թուրը բարձրացնելով՝ երեք անգամ ճոճեց օդում։ Ա՛յ թե հիմա դուրս գային այդ անիծյալ մեծ կատուները. թրի մի հարվածով կթռցներ նրանց գլուխները, և իր անունն էլ կհռչակվեր ամբողջ մկնաշխարհում։

Հանկարծ մոտակա թփուտը շարժվեց, և լուսնյակի շողերի տակ երևաց երկար ականջները խլշած մի գազան։ Նրա ստվերն էլ մկնիկին մի երկրորդ գազան թվաց։ «Առյո՛ւծ է, իսկակա՛ն առյուծ. իսկ կողքինը՝ երևի վագր», մտածեց նա, և ահն ընկավ սիրտը։ Նրա բեղերն անհանգիստ դողդողում էին։ Ինքն էլ դողում էր ամբողջ մարմնով։ Իր սև բախտից ինչքա՜ն էլ մեծ էին այդ գազանները։ Հիմա ուր որ է նրանք կնկատեն իրեն, վրա կտան, և հա՛փ... ու վերջ։ Ի՜նչ հիմարություն արեց, որ թողեց իր հարազատ տունն ու տեղը, իր ընկեր մկներին և գիշերով անտառ եկավ։

Այդ պահին նա նկատեց, որ մոտակա ծառը փչակ ուներ և շտապեց այնտեղ։ Ուզում էր մտնել փչակի մեջ, բայց թուրն ու կոշիկները խանգարեցին։ Էլ ինչ թրի ու կոշիկի ժամանակ էր։ Նա անմիջապես հանեց, դեն շպրտեց թուրն ու երկարաճիտ կոշիկները և մտավ փչակը։

— Վը՛, վը՛, վը՛, վը՛,— սուր ատամներն իրար խփելով՝ քաջը դողում էր փչակում։

Այնինչ քիչ հեռվում, թփի տակ ականջները խլշած, մոլորված ու շվար կանգնել էր մի փոքրիկ, շեկլիկ նապաստակ։ Նա կարծում էր, թե մուկը մի սարսափելի գազան է, ո՞ւր փախչի, որ գլուխն ազատի նրանից... Նա էլ էր դողում ամբողջ մարմնով։ Ա՜հ, ա՜հ, ինչքան վատ արեց, որ անհնազանդ գտնվեց, բաժանվեց մորից և ահա փորձանքի մեջ ընկավ... Եվ փոքրիկ նապաստակը լաց եղավ, ու արցունքի խոշոր կաթիլներ գլորվեցին նրա նշաձև աչքերից...

Փչակում կուչ եկած քաջ որսկանը հանկարծ շատ մոտիկից սուր ճիչ լսեց, որ մի քանի անգամ

կրկնվեց։ Նրան թվաց, թե առյուծն է իր հոտն առել և մռնչում է։ Մինչդեռ ծառի սաղարթների միջից մենավոր մի թռչուն ճկճկոցով կանչում էր իր կորած ընկերոջը...

«Լավ կլիներ մթնով տուն հասնել», մտածեց նա։ Դրսից ոչ մի ձայն չէր լսվում։ Ուրեմն առյուծն ու վագրը հեռացել էին։ Եվ ահա քաջ որսկանը դուրս եկավ թաքստոցից և առաջ սլացավ։

Մոտակա թփի տակ կուչ եկած փոքրիկ նապաստակն էլ սարսափահար սկսեց փախչել։ Մի՞թե առյուծն էր, որ նկատեց ու հետապնդում է իրեն։ Ահա ուր որ է՝ կբռնի իր վզակոթից ու...

Եվ քաջ որսկանն առանց ետ նայելու, մացառների միջով ծլկեց։

Վերջապես մուկը տեղ հասավ։ Փախչելիս ոտքը քարին էր խփել և կաղում էր։

Մեծ ու փոքր մկները նորից բներից դուրս թափվեցին՝ քաջ ցեղակցին դիմավորելու համար։

— Բարի գալո՜ւստ, բարի գալո՜ւստ,— լսվում էին մկնային ծվծվոցներ։

Որսկանը նրանց ողջույնին անմիջապես չկարողացավ պատասխանել։ Արագ վազելուց հևում էր, ահից դեռ ուժեղ խփում էր սիրտն ու դողում էին բեղերը։ Բայց մկներին թվաց, թե կատաղությունից էր դողում քաջ որսկանը։

Որսկանը քիչ հանգստացավ, խոր շունչ քաշեց և վերջապես խոսեց.

— Բարեկամներ, երբ անտառ մտա, տեսա, որ մեր ընդհանուր թշնամի կատվի ցեղից, բայց կատվից հարյուր անգամ մեծ մի վագր հեռվից մոտենում է ինձ. ես թաքնվեցի մի փչակում, որպեսզի վագրին չփախցնեմ։ Ու հանկարծ թաքստոցից դուրս եկա նրա առաջ՝ թուրս հանեցի և ... և տո՛ւր թե կտաս հա՜... Ու մի հարվածով թռցրի գլուխը։ Ապա նստեցի ու հանգիստ անուշ արեցի միսը։ Ուտելուց հետո մորթին էլ հանեցի, մի ծառից կախեցի և վրան վագրի արյունով գրեցի. «Ես որսկան մուկն եմ՝ անվախ ու քաջ, առյուծներ ու վագրեր, դողացե՛ք իմ առաջ»։

— Հետո՞, հետո՞,— անհամբեր ծվծվացին մկները։

— Հետո, երբ արդեն կերել, պրծել էի, ամբողջ անտառի գազանները սկսեցին մռնչալ՝ երևի ինձ վախեցնելու համար։ Մեկ էլ ի՞նչ տեսնեմ.— յոթ ուրիշ վագրեր աչքերից կայծեր արձակելով՝ գալիս էին վրաս։ Երևի ուզում էին ինձ վախեցնել և իրենց ընկերոջ վրեժը լուծել։ Դե, վախեցողի՜ս գտան։ Հենց որ նրանք շրջապատեցին ինձ, նորից մերկացրի թուրս ու այս անգամ մի հարվածով թռցրի յոթ գլուխ. այն էլ ի՜նչ — վագրի՜ գլուխ...

Բոլոր մկներն ակնածանքով լսում էին իրենց քաջ ցեղակցին։ Ապրես դու քաջ որսկան, շատ ապրես...

Ու խանդավառված որսկանի քաջագործություններից մկներն սկսեցին բարձրաձայն երգել.

Բեղդ լինի ոլորուն,
Կոշիկներդ՝ փայլփլուն,
Թուրդ էլ լինի միշտ կտրուկ,
Մեր մեծ եղբայր, անվախ մուկ։

— Հապա որտե՞ղ են որսերը, մեր բաժինը, մեծ ախպեր,— երգելուց հետո համարձակվեց հարցնել մի փոքրիկ, քաղցած մկնիկ։

— Որսերն անտառումն են, փոքրիկ ախպեր. այդպիսի ծանր որս բերե՞լ կլինի։ Մի քիչ նեղություն քաշեք, գնացեք և անուշ արեք...

Այդ միջոցին առաջ եկավ մի տարեց մուկ, մոտեցավ քաջ որսկանին, ձեռքով դմդմբացրեց նրա դատարկ փորին, շոշափեց կաղացող ոտքը և հարց տվեց.

— Քաջ որսկան. իսկ որտե՞ղ ես թողել քո զենքերն ու զրահը, քո խիթանավոր կոշիկները. հետո ինչու՞ փորդ քաղցից ներս է ընկել ու ոտքդ էլ կաղում է։



Քաջ որսկանը նեղն ընկավ անակնկալ հարցից։ Բայց իրեն հավաքեց ու բացատրեց.

— Մեծ ախպեր, ի՞նչ թաքցնեմ քեզանից, ամոթ բան չի. զենքս ու զրահս ջարդվեցին դա-

*ղանների վզները թոցնելիս. դրանց համար վզներին թո՛ւր կդիմանա։ Իսկ կոշիկներս մնացին գազանների բերաններում։ Ոտքս էլ մի քիչ քերծվեց. դե ստիպված էի ոտքով էլ հարվածել։ Բայց այդ բոլորը դատարկ բան է։ Կռվում ամեն ինչ էլ կարող է պատահել։ Իսկ թե ինչո՞ւ է փորս դատարկ, այդ էլ կասեմ։ Որսկանի փորում ամեն ինչ շուտ է մարսվում, մանավանդ, երբ անտառում կռվում է գազանների հետ։ Մեծ ախպեր, թե կասկածում ես ասածներիս, վաղը գնանք անտառ, որ համոզվես իմ խոսքերի ճշտությանը։*

*Տարեց մուկը բեղի տակին ծիծաղեց ու արհամարհանքով ծվծվաց.*

*— Ա՛յ դու սուտլիկ որսկան. ա՛յ դու փչան պարծենկոտ,— լավ ես խաբում միամիտներին, բայց ինձ չես խաբի։ Ութը տարի ես քոր հաց չեմ կրծել... Ապա մի մառանում կատվի առաջ ցույց տուր քո քաջությունը, հետո մառանից կհասնես անտառ՝ առյուծներին ու վագրերին։*

*— Ծի՛, ծի՛, ծի՛, ծի՛,— ծիծաղեց քաջ որսկանը,— դու էլ բա՛ն ասացիր։ Կատուն ինչ է, որ ահ է գցել ձեր սիրտը։ Թրիս մի հարվածով յոթանասուն կատվի գլուխ կթռցնեմ. ինձ քաջ որսկան կասեն.— նորից հոխորտաց մուկը։ Եվ դեռ իր խոսքը չէր վերջացրել, երբ կանաչ, բոցավառ աչքերով մի սև կատու հայտնվեց մառանում ու թը՛փ... թաթը դրեց մեր որսկանի վրա։ Եվ մի ակնթարթում իրենց բները փախած մկներն ահով տեսան, թե ինչպես կատուն ճանկեց ու լափեց քաջ որսկանին։*

*Իսկ մի փոքրիկ, հիմար մկնիկ, ճեղքից նայելով թաթերը լիզող կատվին՝ դեռ միտք էր անում.*

*«Ա՛յ, թե քաջ որսկանի թուրը մոտը լիներ հա՜. նա սև կատվին ցույց կտար... Ցույց կտար, թե ով է ինքը... Բայց ափսո՜ս, հազա՛ր ափսոս...»։*

## ՀՅՈՒՐԸ

*ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ*

Ի՞նչ ես նստել, սիրուն ծիտիկ,
Պատուհանիս գոգին,
Որտե՞ղ էիր փնտրում հատիկ
Դու ամառվա շոգին:
Ես քեզ հեռվից շատ եմ սիրել
Եվ քեզ համար հաճախ
Պատուհանս բաց եմ արել,
Որ ներս նախրես, իմ չար:
Ձմռան այս ցուրտ օրին եկել,
Ներս ես նայում համառ,

Բայց, ի՞նչ կարող եմ ես անել
Ծիտիկ իմ, քեզ համար:
Թե բաց անեմ փեղկը կամաց
Ու քեզ հատիկ նետեմ,
Վախենում եմ, որ դու հանկարծ
Թռչես գնաս եթեր:
Քեզ համար է հատիկն ընտիր,
Մի վախենա, անգի՛ն,
Գոնե մի քիչ երկար նստիր
Պատուհանիս գոգին:

## ՁԵՄՈՒՏԻՆ

*Վ. ՏԱԼՅԱՆ*

— Նորի՛կ, այս կեր.
— Ձե՛մ ուտի:
— Նորի՛կ, այն կեր.
— Ձեմ ուտի:
— Առ այս համեղ պաքսիմաթը...
— Հենց ե՞ս պիտի ուտեմ վատը:
— Լավ, կարկանդակ առա տաք-տաք..
— Է՛... ամեն ինչ ի՞նձ պիտի տաք:
Այսպես է նա միշտ ասում.
Իսկ մայրիկին չի լսում:
Եվ հենց ելավ դռնից դուրս,
Մի կոն կառնի սուս ու փուս,
Շուտ կդնի բերանը

Ինչպես կարի ծծանը:
Ոտեին գտավ՝ կծամի,
Ուժն է փորձում ատամի:
Մատիտն ինչպես շոկոլադ,
Հետն էլ երկու կամ մի մատ
Անուշ-անուշ կծծի.
Բայց տան շեմքը որ անցնի...
— Նո՛րիկ, այս կեր.
— Ձեմ ուտի...
— Նորի՛կ, այն կեր.
— Ձեմ ուտի...
Հիմա անունը նրա
Մնացել է Ձեմուտի:

# ՃԱՏԱԽՈՍԸ



Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Մեր դասարանում կար մի չար Արամ,
Բացբերան էինք կանչում մենք նրան:
Երբ դաս հարցնեին՝ ոչինչ չէր հիշում,
Երբ չէին հարցնում՝ խոսում էր, հուշում:
Թե որ քարտեզի մոտ էին կանչում,
Անմիտ ու անկապ բաներ էր փչում,
Քաղաք էր փնտրում ծովերի վրա,
Իսկ անապատում՝ ճահիճ ու տունդրա:
Բայց անա մի օր պատժվեց նա խիստ,
Դեպքն այդ հիշելով ծիծաղում ենք միշտ:
Բացված օդանցքից հանկարծ մի անգամ
Մի փոքրիկ մեղու մտավ դասարան:

Մենք բոլորս լուռ դաս էինք լսում,
Միայն Արամն էր անդադար խոսում:
Իսկ մեղուն օդում տզտզում անվերջ
Ու պտտվում էր դասարանի մեջ:
Մեկ էլ նա ասես մի խորոչ գտավ
Ու... բը՜զզ Արամի բերանը մտավ:
Մտավ բերանը ու խայթեց լեզուն.
Ճչում էր տղան, դես ու դեն վազում...
Երբ բժշկուհին բուժում էր նրան,
Ասաց,— դա քիչ է քեզ, ա՛յ բացբերան.
Ինչո՞ւ էիր դու այդքան շատ խոսում,
Որ մեղուն գար ու խայթեր քո լեզուն:



# Դեն գցիր



Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Մորեխն ընկած ձեռ ու ոտ,
Իրեն գցեց ճանճի մոտ.
— Տզզան ախպեր, ձեռք մեկնիր,
Թե ճար ունես, շուտ՝ օգնիր...
— Ի՞նչ է եղել, մեծ ախպեր,—
Ասաց ճանճը անհամբեր:
— Հարցուփորձդ դենը դիր,
Ինձ ծխելու բան գտիր...
— Ծխելու բա՞ն... կներես,
Էլ չեմ ծխում հիմա ես:
— Էլ չես ծխո՞ւմ, այ քեզ բա՜ն,
Որ այդպես է, հոգի ջան,
Գոնե պոչս կրակ տուր,
Թող ծուխ ելնի մի պուճուր,
Մեկ էլ ծխի հոտն առնեմ,
Որ կարոտով չմեռնեմ...
— Է՛, սիրելիս, զսպի՛ր քեզ.
Այն հինգը տեսնո՞ւմ ես,
Այնպես թաղված ծխի մեջ
Ծխում էի ես անվերջ...

Մի օր ինձ շատ տանջեցի,
Շտապ բժիշկ կանչեցի.
Դե՜, բժիշկն էլ գլխի տեր,
Փորձված մարդ էր, լավ գիտեր.
Կաշիս մաշկեց, ետ տարավ,
Կուրծքս պատռեց, բաց արավ,
Նայեց, տեսավ, որ իրոք
Սևացել է սիրտ ու թոք...
Բժիշկն այստեղ բարկացավ.
«Ա՜յ դու ծխես չոռ ու ցավ,
Հո մարմին չէ՝ ծխի համք,
Ի՞նչ ես անում, ա՛յ չոր զանգ,
Դու չե՞ս զգում վտանգը,
Մազից է կախ քո կյանքը.
Ծխելը թող, խղճա քեզ,
Թե չէ՝ անդարձ կկորչես»:
Այն օրվանից, բարեկամ,
Էլ չեմ առել ծխի համ.
Դու էլ, ախպեր, անիծիր,
Այդ ծխելը դեն գցիր:

# Կառուցեք ինքներդ

Երեխանե՛ր, արդեն գարուն է, ամենալավ ժամանակը սպորտային հրապարակը կարգավորելու և նոր հրապարակներ կառուցելու համար:

Մեր ամսագրի այս համարում տրվում են գործնական խորհուրդներ, որոնց օգնությամբ կարելի է սեփական ուժերով կառուցել վոլեյբոլի, բասկետբոլի հրապարակներ, վազքուղիներ և թռիչքի փոսեր:

## Վոլեյբոլի հրապարակ

Ամենից առաջ պետք է ընտրել հողամասը: Վոլեյբոլի հրապարակի հողամասի երկարությունը պետք է լինի 23 մետր, լայնությունը՝ 14, իսկ բասկետբոլինը՝ 30 մ.×18 մ.:

№ 1 գծագրում տրված է վոլեյբոլի հրապարակի ընդհանուր պատկերը, որն իրենից ներկայացնում է տասնութ մետր երկարություն և ինը մետր լայնություն ունեցող մի ուղղանկյուն: Հրապարակը չորս կողմից շրջապատվում է երկու և կես մետր լայնություն ունեցող տարածությամբ: Հրապարակի երկարությամբ ձգվող գծերը կոչվում են կողային գծեր, իսկ լայնությամբ անցնողները՝ ճակատային: Խաղացանցի տակ գտնվում է միջին գիծը, որը հրապարակը բաժանում է երկու հավասար մասի: Միջին գծին զուգահեռ երեք մետր հեռավորության վրա (երկու կողմերում) անցկացվում են հարձակման գծերը: Միջին և հարձակման գծերի միջև ընկած տարածությունը կոչվում է հարձակման հրապարակ:



Գծ. №1

Գնդակի մատուցման կամ ընձեռման տեղը նշվում է յուրաքանչյուր խաղադաշտի աջ անկյունում, միմյանցից երեք մետր հեռավորություն ունեցող 15 սանտիմետրանոց երկու գծիկով, որոնցից մեկը պետք է լինի կողային գծի շարունակությունը:

Բոլոր գծերի լայնությունը հինգ սանտիմետր է, որոնք մտնում են հրապարակի ընդհանուր չափսերի մեջ:

Վոլեյբոլի հրապարակը կահավորելու համար անհրաժեշտ է երկու հատ երկարյա սյուն կամ փայտե ձող: Դրանք պետք է հորել հողի մեջ, այն հաշվով, որ գետնից մինչև ձողի վերևի ծայրը լինի 2,6 մ.: Հետո կապվում է ցանցը, որի երկարությունն է ինն ու կես մետր, իսկ լայնությունը՝ մեկ մետր (գծագիր № 2):

Ձողերը պետք է հորել կողային գծերից մինչև մեկ մետր հեռավորության վրա: Խաղացանցը գետնից պետք է բարձր լինի. տասներեք-տասնչորս տարեկան տղաների համար՝ երկու մետր քսան սանտիմետր, աղջիկների համար՝ երկու մետր տաս սանտիմետր, իսկ տասնհինգ-տասնվեց տարեկան տղաների համար՝ երկու մետր երեսունհինգ սանտիմետր, աղջիկների համար՝ երկու մետր քսան սանտիմետր:

Այնտեղ, որտեղ հնարավոր չէ բասկետբոլի հրապարակից բացի ունենալ առանձին վոլեյբոլի հրապարակ, կարելի է բասկետբոլի դաշտում գծել նաև վոլեյբոլի հրապարակ, բայց շարժական ձողերով, որոնք չեն հորվում գետնի մեջ:

Նախքան բասկետբոլի հրապարակի չափսերի և կահավորման նկարագրումը, ծանոթանանք վոլեյբոլի և բասկետբոլի հրապարակների հողային աշխատանքների կազմակերպման հետ, որոնք միանման են: Պետք է աշխատել այնպիսի հողամաս ընտրել, որը պարունակի 20—30 տոկոս կավահող և 70—80 տոկոս՝ ավազ: Երբ գետինն ավելի շատ կավ է պարունակում, քան պահանջվում է, պետք է ավելացնել ավազը և ընդհակառակը: Դա անհրաժեշտ է նրա համար, որ չոր եղանակներին հրապարակը փոշոտ չլինի, իսկ անձրևային օրերին՝ ցեխոտ: Հողի բաղադրության տոկոսն իմանալու համար կարելի է այսպիսի փորձ կատարել, վերցրեք կես բաժակ հող, վրան նույնքան ջուր ավելացրեք և փայտիկով խառնեք այնքան, որ լավ լուծվի: Հետո բաժակը դրեք սեղանին: Ջուրը պարզվելուց հետո դուք հեշտությամբ կորոշեք հողի բաղադրության տոկոսը:

Ընտրելուց հետո հողամասը պետք է մաքրել քարերից ու աղբից, համապատասխան չափումներ կատարել և գետնի մեջ փայտե ցցիկներ խփելու միջոցով հրապարակի տեղն առանձնացնել: Դրանից հետո պետք է սկսել հրապարակի կառուցման աշխատանքները: Պետք է գետինը յոթ-ութ սանտիմետր խորությամբ փորել, ինչպես նաև փոսեր փորել ձողերի համար: Հետո երկաթե փոցխի օգնությամբ հողը մաքրել քարերից, ապակու և փայտի կտորներից: Ելնելով հողի բաղադրությունից պետք է ավելացնել անհրաժեշտ քանակի լրացուցիչ նյութեր (ավազ, կավ, գաջ, տորֆային փոշի): Նպատակահարմար է նախապես մեկ և կես քառակուսի մետր տարածության վրա կառուցել փորձնական հրապարակ, որը լրացուցիչ նյութերի խառնումից հետո ամրացվում և փորձարկվում է: Փորձարկման արդյունքներն իմանալուց հետո ամբողջ հրապարակի փորված հողի մեջ շաղ է տրվում համապատասխան քանակի լրացուցիչ նյութեր: Նախքան այդ, դրանք մաղվում են հատուկ մաղերով: Այդ ամենից հետո պետք է տնկել ձողերը, ցնցուղով ջրել ամբողջ հրապարակը և որոշ ժամանակից հետո սկսել ամրացնել գետինը: Դրա համար լավ կլինի օգտագործել տախտակից պատրաստված գետնաքակ: Գետինը պնդացնելիս պետք է հատուկ ուշադրություն դարձնել, որ մակերեսը հարթ և թեք լինի: Դա անհրաժեշտ է նրա համար, որ անձրևաջուրը խա-



Գծ. №2

ղադաշտում չմնա: Այդ նպատակով միջին գիծը պետք է բարձր լինի նակատային գծերի համեմատությամբ (վոլեյբոլի հրապարակի համար՝ 6 սմ., իսկ բասկետբոլինը՝ 8 սմ.): Երբ հրապարակը գտնվում է միակողմանի թեքություն ունեցող հողամասում, ապա հրապարակի թեքությունը նույնպես միակողմանի պետք է լինի: Այդ դեպքում հրապարակի բարձր կողմից պետք է ջրի փոքրիկ առվակներ բացել, որպեսզի վերևից եկող ջուրը չլցվի հրապարակ: Գետինն ամրացնելուց հետո բարակ շերտով ավազ շաղ տվեք և գետնաքարով նորից ամրացրեք գետինը: Վերջում անհրաժեշտ է ավլել հրապարակը և բանձր կրաջրով բելի օգնությամբ քաշել հրապարակի գծերը:

## Բասկետբոլի հրապարակ

Ինչպես ցույց է տրված № 3 գծագրում, բասկետբոլի հրապարակի երկարությունը պետք է լինի քսանվեց մետր, իսկ լայնությունը՝ տասնչորս: Կողային և նակատային գծերի



Գծ. №3

լայնությունները չեն մտնում հրապարակի ընդհանուր չափերի մեջ: Հրապարակը երկու մասի բաժանող միջին գծի մեջտեղում գտնվում է 1,2 մ. և 3,6 մ. տրամագիծ ունեցող երկու շրջանագիծ: Ճակատային գծի կենտրոնից 5,8 մ. հեռավորության վրա գծվում է 1,8 մ. շառավիղով մի շրջանագիծ, որը կենտրոնից կիսվում է «տուգանքային նետման գծով»: Այդ գիծը տարվում է զուգահեռ նակատային գծին, որի երկու ծայրերից մինչև նակատային գիծը կողային գծերին զուգահեռ երկու գիծ է անցկացվում, որոնք առաջացնում են «տուգանքային նետման վայրը»: Սրա կողային գծերի վրա անցկացվում են տաս սանտիմետր երկարություն ունեցող չորս գծիկներ. առաջինը նակատային գծից 1,2 մ. հեռավորության վրա, իսկ մյուսները միմյանցից հեռու պետք է լինեն 90 սմ.: Ճակատային գծերից քառասուն սանտիմետր հեռավորության վրա գետնի մեջ հորում են բասկետբոլի ձողերը: Ձողերի վրայի երեք սանտիմետր հաստություն ունեցող տախտակե վահանակներին (1,8 մ.×1,2 մ.) ամրացվում են մետաղյա օղակներ, որոնցից ցանց կա կախված: Վահանակը ներկվում է սպիտակ գույնով և եզրագծվում է հինգ սանտիմետր լայնություն ունեցող սև գծերով: Վահանակի ներքևի մասից մինչև գետին պետք է լինի 2,75 մ.: Վահանակի մեջտեղը ամրացվում է 20 միլիմետր հաստություն և 45 սմ. տրամագիծ ունեցող մետաղյա օղակ: (№ 4 գծագրում տրված են մյուս բոլոր չափսերը):


Գծ. №4

Վոլեյբոլի և բասկետբոլի հրապարակներին կից կարելի է պատրաստել վազքուղիներ և թռիչքի փոսեր՝ թեթև ատլետիկայով զբաղվելու համար:

Վազքուղու երկարությունը պետք է լինի 80—120 մետր, իսկ լայնությունը՝ 1 մ.—1,25 մ. (յուրաքանչյուր վազողի



Գծ. № 5

համար): Գետինը փորելուց հետո երկաթե փոցխով հողը մաքրեք քարերի, ապակիների, մետաղի և փայտի կտորներից: Այնուհետև շաղ տվեք մանր խարամ (շլամ) և փոցխով խառնելուց հետո հողի երեսը ծածկեք զաջի բարակ շերտով: Վերջում հարթեցրեք և ցնցուղով ջրելուց հետո պնդացրեք գետինը:

Թռիչքի փոսի երկարությունը պետք է լինի վեց մետր, լայնությունը՝ երեք, իսկ խորությունը՝ հիսուն սմ. (գծագիր № 5), որը կարելի է օգտագործել թե՛ թռիչք բարձրության և թե թռիչք երկարության համար: Փոսի մեջ լցրեք յոթանասուն հինգ տոկոս ավազ և քսանհինգ տոկոս թեփ: Թափ առնելով թռչելու համար փոսից 1,5 մ. հեռավորության վրա վազքուղու լայնքով դրվում է հիման տախտակը:

Այսպիսի սպորտային հրապարակներ կարելի է կառուցել նաև բակերում: Այդ աշխատանքները պետք է ղեկավարեն ավագ ջոկատավարները, ֆիզկուլտուրայի դասատուները՝ բարձր դասարանների աշակերտների մասնակցությամբ:

## «ԿՌՈՒՆԿՆԵՐ»

*Կռուն, կռուն-կռուկռուն,*
*Կռունկները հա թռան,*
*Կռունկների թևի տակ*
*Եկավ ամառ մեր դռան։*




Այս տողերի հեղինակը հայ նշանավոր բանաստեղծ Ռափայել Պատկանյանն է, որը մանուկների համար գրել է բազմաթիվ գողտրիկ բանաստեղծություններ։ Վերջերս Հայպետհրատը լույս ընծայեց նրա «Կռունկներ» գրքույկը։

Կանաչ դաշտ, ծաղկած պարտեզ, բոչնակ և պայծառ արեգակ սիրելուց առաջ, երեխան պետք է սիրի աշխատանք. ահա «Ժրաջան տղա» բանաստեղծության գաղափարը։

Մի ուրիշ բանաստեղծության մեջ («Թռչունի ձագ») Պատկանյանը գրում է, որ երեխան քնած է, իսկ մայրը նրա համար հարևան սենյակում հաց է պատրաստում։ Հանկարծ երդիկից գայլը ներս է ընկնում և կատաղաբար հարձակվում երեխայի վրա։ Երեխան սաստիկ վախենում է։

*Երեխեք, ինչո՞ւ այդպես սարսեցաք,*
*Թռչունի համար դուք չե՞ք գայլ անհագ…*

Երբեք չի կարելի քանդել թռչունների բույնը։

Ուրիշ շատ լավ ոտանավորներ էլ կան գրքույկում։ Կարդացեք այդ բանաստեղծությունները։

Գիրքը ձևավորել է Ռ. Նանուշյանը։

## «ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ»

Ջրաղացպանն այնքան է ընտելացել ջրաղացի աղմուկին, որ կարողանում է քնել աղմուկի մեջ։ Իսկ երբ հանկարծ որևէ պատահարից ջրաղացը «լռե, սառչի», ապա ջրաղացպանը իսկույն քնից վեր կթռչի։ Այսպիսին է «Ջրաղացպանի քունը» բանաստեղծության բովանդակությունը։ Դա տեղավորված է Հայպետհրատի կողմից նոր լույս տեսած Ղազարոս Աղայանի մանկական բանաստեղծությունների գրքում։ Այդ գիրքը մեզ ծանոթացնում է հին գյուղի կյանքին ու աշխատանքին, պատկերում գեղեցիկ բնությունը։

Ինչքա՜ն անուշ է տավարածի նախանաշը՝ աղբյուրի մեջ թրջած հացը։ Կամ՝ սարի լանջը հովվի համար մահճակալ է, քարը՝ փափուկ բարձ, իսկ հին կարպետը՝ վերմակ։

Մի ուրիշ ոտանավորի մեջ («Միտն ու բազեն») նկարագրված է, որ ծիտը ծվլում է ժայռի վրա և չի նկատում, որ




իր գլխի վերև պտտվում է բազեն։ Երեխաները տեսնում են այդ և իրենց աղմուկ-աղաղակով թույլ չեն տալիս, որ բազեն որսա ծիտիկին։

Իսկ ինչքա՜ն լավ են գրված «Արեգակը», «Հնձվորները», «Ձորս եղանակ» ոտանավորները։

## «ՊՈՒՅՊՈՒՅ ՄՈՒԿԻԿԸ»

Հնդկաստանի անտառներից մեկում, կոկոս ծառի փչակում ապրում է Պույպույ մուկիկը։

*Ապրում է նա իր համար,*
*Թարիքներում անհամար*
*Ու մի օր լավ, մի օր վատ՝*
*Ունեն ապրուստ քիչ, թե շատ։*

Մի օր էլ նա մտածում է ճաշակել նաև կոկոսի համը։ Այդ ժամանակ ծառից մի կոկոս է ընկնում ցած։ Պույպույը տեսնում է, որ ծառից ընկնելու ժամանակ կոկոսի կեղևը ճեղքվել է։ Բայց ինչ օգուտ, բացված ճեղքը շատ փոքր է, իսկ ինքը՝ մեծ։




Շատ է տանջվում Պույպույը, նիհարում է և հեշտությամբ անցնում է բացված ճեղքով։ Իսկ թե ինչ եղավ Պույպույի վերջը կոկոսի մեջ մտնելուց հետո, այդ դուք կիմանաք, երբ կարդաք սովետահայ անվանի գրող Դերենիկ Դեմիրճյանի «Պույպույ մուկիկը» բանաստեղծությունը։ Դա զետեղված է «Պույպույ մուկիկը» բանաստեղծությունների գրքույկում։ Այդտեղ են ամփոփված նաև «Մտապար», «Փիսիկի վիշտը» և այլ գործեր։

Գիրքը ձևավորել է նկարիչ Գ. Յարալովը։

Հ. ՀՈՎՍԱՓՅԱՆ

# Խ Ա Ղ Ե Ր

## Ցկեք քուչենք

Խաղին մասնակցում են 10—20 պիոներ և բաժանվում են երկու հավասար մասի: Խաղի տեղը լինում է հրապարակ կամ դաշտ: Ղեկավարը շարքերի առաջ որպես ստարտ մի ընդհանուր գիծ է քաշում:

Յուրաքանչյուր շարքի առջևի պիոները խաղն սկսելու հրահանգը լսելուց հետո երկու ոտքով ցատկում է առաջ:



Այդտեղից նույն ձևով թռչում է երկրորդ համարի պիոները: Երկրորդի ցատկած տեղից թռչում է երրորդը և այսպես շարունակ:

Երբ բոլոր խաղացողները ցատկում են, խաղի ղեկավարը չափում է տարածությունը և որոշում, թե որ շարքն է տարել հաղթանակը:

Պարզ է, որ հաղթանակը տրվում է այն շարքին, որի անդամներն ավելի երկար տարածություն են թռել:

## Զգույշ, չգցես

Խաղի համար անհրաժեշտ է ունենալ չորս հատ փայտիկ, յուրաքանչյուրը երեսուն սանտիմետր երկարությամբ և հինգ սանտիմետր տրամագծով:

Խաղացողներից երկուսը վերցնում են երկուական փայտիկ, կանգնեցնում են իրար վրա և մեկ ձեռքով բռնելով տակի փայտիկի ներքևի մասից՝ կանգնում են ստարտում:

Երբ տրվում է հրահանգը, խաղացողները սկսում են քայլել, բայց այնպես զգույշ, որ վերևի փայտիկը չընկնի:



Ով կարողացավ պահպանել վերևի փայտիկի հավասարակշռությունը և առանց գցելու շուտ հասնել ֆինիշին, նա էլ կլինի հաղթողը:

Լավ կլինի սկզբում խաղը կազմակերպել օղակի պիոներների համար, որից հետո այն անցկացնել ջոկատում:

*Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*

# Ժ Ա Մ Ա Ն Ց

## Կարո՞ղ ես արդյոք

(Լուծման համար 3 միավոր)



*Մատիտը չբարձրացնելով թղթից, չորս ուղիղ գծով անցեք բոլոր շրջանակների վրայով:*

## Վիկտորինա

(Լուծման համար 2 միավոր)

*Ո՞ր մոլորակի անվան տառերի տեղափոխությամբ կարելի է ստանալ Սովետական Միության ռեսպուբլիկական մայրաքաղաքի անունը:*

*Առաջարկ՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

## Գծերի օգնությամբ

(Լուծման համար 3 միավոր)

*Երեք ուղիղ գծով այս նկարներն առանձնացրեք միմյանցից:*

*Առաջարկ՝ Մ. ՕԹԱՐՈՎԻ*



## Պատասխանում ենք

Մեր ամսագրի 1955 թվականի 11-րդ և 12-րդ համարներում տպագրված ժամանցների պատասխաններն են.

«Պիոներ» № 11.

### 1. Կրոսվորդ

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ— 4. Ապեննինյան, 5. Ավրորա, 6. Կիտրոն, 8. Աղասի, 9. Օնեգա, 14. Դատարան, 17. Կալինին. 18. Մուրացան, 19. Կածան, 20. «Անուշ», 21. Բարու, 22. Լիտվա, 27. Գոյական, 29. Ղարաբաղ, 30. «Ազդարար», 33. Քանոն, 34. Թենիս, 36. «Կարմեն», 37. «Անահիտ». 38. Լենինգրադ։

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ— 1. «Սպարտակ», 2. Մինսկ, 3. Գալիլեյ, 5. Արագած, 7. Նարգիզ, 8. Արագի, 10. Ածանց, 11. Բաղրամյան, 12. «Երազ», 13. Կիրովական, 15. Կուտուզով, 16. Դասարան, 23. Գնացք, 24. Կամա, 25. Օազիս, 26. Մարշակ, 28. Կաղնուտ, 31. Ինժեներ, 32. Անանյան, 35. Թթենի։

2. ՌԵԲՈՒՍ.— Կեցցե՛ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38 տարին։

3. ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ.— 1. Փոցխ, 2. Առնետ։

«Պիոներ» № 12

### 1. Կրոսվորդ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ— 1. Սենա, 2. Կոլա, 4. Կամա, 5. Յավա, 6. Անգարա, 8. Տայվան, 9, Ատլաս, 12. Ալբանիա, 13. Սենեգալ, 14. Քաբուլ, 15. Անիվա, 16. Սուդակ, 17. Դրավա, 23. Արաբիա, 24. Երկաթ, 25. Նանսեն, 29. Լաին, 30. Նանտ, 32. Արադ, 33. Նիաս։

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ— 3. Սեդով, 6. Անկարա, 7. Արարատ, 10. Արկտիկա, 11. Յանա, 13. Սավա, 15. Արաքս, 18. Վասա, 19. Նարա, 20. Օազիս, 21 Ադլեր, 22. Կաբա, 25. Նևա, 26. Ատրեկ, 27. Ռաբա, 28. Լենա, 29. Լիսաբոն, 31. Աֆրիկա, 33. Նանկին, 34. Բանան։

Ճիշտ պատասխանել են. Լ. Կարապետյան (Էջմիածին), Հ. Ջանջուղազյան (Երևան), Ռ. Սահակյան, Լ. Հովսեփյան (Մարտունի), Լ. Ղազախեցյան (Կրասնոսելսկ), Ն. Մանթաշյան (Սպիտակ), Ս. Կիրակոսյան (Մեղրի) և ուրիշներ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝* Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ
*չորրորդ էջը՝* Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ






Ձեռագրերը չեն վերադարձվում


**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 01665։ Պատվեր 243։ Տիրաժ 5000։ Տպագրական 4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 13/III 1956 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

Խոսք՝ Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ

Երաժշտություն՝ Է. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

(Կոմպոզիտոր Ստ. Ջրբաշյանի ստեղծագործական դասարանի աշակերտ)

## ԳԵՏԱԿԸ

— Ո՞ւր ես վազում
Այդպես արագ,
Ա՜յ դու կայտառ,
Սիրուն գետակ.
Կանգ առ, խաղանք
Էս ծառի տակ:
«Չէ՛, փոքրիկըս,
Գնամ պիտի.
Տես ջաղացը
Գյուղի մոտի
Պետք է ուժ տամ,
Որ պըտըտի:
Ցածն էլ հովտում
Անուշահոտ
Ինձ են մնում
Ծաղիկ ու խոտ,
Հոգնած-ծարավ
Տավարն ու հոտ:
Դե՜, տեսնո՞ւմ ես,
Մնա՛ս բարով.
Ճամփաս ցանած
Հազար գործով,
Դադար չունեմ
Ես մինչև ծով»:

Allegretto



Գինը 2 ռ.

# ՄԱՅՐԻԿԻ ՕԳՆԱԿԱՆԸ









